ՊՐՈԼԵՏԱՐՆԵՐ ԲՈԼՈՐ ԵՐԿՐՆԵՐԻ, ՄԻԱՑԵՔ







# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

# 6

ՀՈՒՆԻՍ • 1990

Պրոլետարներ բոլոր երկրների, միացե՛ք



# ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ

6

ՀՈՒՆԻՍ

1990

ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՈՒՆԻՍՏԱԿԱՆ ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ
ԿԵՆՏՐՈՆԱԿԱՆ ԿՈՄԻՏԵԻ
ՏԵՍԱԿԱՆ-ՔԱՂԱՔԱԿԱՆ ԱՄՍԱԳԻՐ

ՀՐԱՏԱՐԱԿՎՈՒՄ Է
1922 ԹՎԱԿԱՆԻՑ

ԼՈՒՅՍ Է
ՏԵՍՆՈՒՄ
ԱՄԻՍԸ ՄԵԿ
ԱՆԳԱՄ

## Բովանդակություն



ԵՐԵՎԱՆ

ՀԱՅԱՍՏԱՆԻ
ԿՈՄԿՈՒՍԻ
ԿԵՆՏԿՈՄԻ
ՀՐԱՏԱՐԱԿՉՈՒԹՅՈՒՆ

ԱՂԵՏԻ ԳՈՏԻ. ԳՈՐԾԵՐ ԵՎ ՀՈԳՍԵՐ



ՀԻՇԱՐԺԱՆ ՏԱՐԵԹՎԵՐ



ՊԱՏՄՈՒԹՅԱՆ ԷՋԵՐԻՑ



Խմբագրության հասցեն՝
375023, Երևան—23, Օրջոնիկիձեի պողոտա, № 2

ՀԵՌԱԽՈՍՆԵՐ՝
գլխավոր խմբագիր՝ 52—89—93
գլխավոր խմբագրի տեղակալ՝ 52—99—22
պատասխանատու քարտուղար՝ 52—99—34
պատասխանատու քարտուղարի տեղակալ՝ 56—59—93

Բաժիններ
մարքս-լենինյան տեսության պրոպագանդայի՝ 52—05—58
կուսակցական կյանք՝ 52—25—43
սոցիալ-տնտեսական պրոբլեմների՝ 52—57—56
գիտության և կուլտուրայի՝ 53—86—11
գրական աշխատողներ՝ 52—66—77
56—59—94
թղթակիցներ, սրբագրիչ՝ 53—86—11



# ՆՈՐԱՑՄԱՆ ԳԱՂԱՓԱՐԱԽՈՍՈՒԹՅՈՒՆ. ՄՏԱԾՈՂՈՒԹՅԱՆ ԵՎ ԳՈՐԾՈՂՈՒԹՅԱՆ ՌԵԱԼԻԶՄ

Ա. ԿԱՊՏՈ

ՄՏՔԵՐԻ ԽՄՈՐՈՒՄՆ ՈՒ ՄԻՏԻՆԳԱՅԻՆ ԿՐՔԵՐԻ եռքը, կարծիքների ու դիրքորոշումների բախումները, քաղաքական ուժերի քացահայտ հակամարտությունը՝ խորհրդային հասարակության համար այս բոլոր անսովոր պրոցեսները տեղի են ունենում պետական-քաղաքական կառուցվածքների ճգնաժամային իրավիճակում, որի հնարավորությունն ինչ-ոչ վաղ անցյալում մի մռայլ սադրիչ մարգարեություն կթվար:

Անտասան «հիմքերի» նկատմամբ դոգմատիկ հավատամքը, «սկզբունքների անաղարտությանը» բծախնդրորեն հետևելը այնքան հանկարծակի փլուզվեցին, որ պաշտոնական գաղափարախոսության մեջ առաջացրին տարերային աղետի տպավորություն: Այն հարցերը, թե մենք որտեղ ենք գտնվում, թե որտեղից ուր ենք գնում՝ կյանքն ինքն է առաջադրել հասարակությանը: Եվ ամենևին պատահական չէ, որ ճշմարտության ծանրությամբ վհատված շատ մարդկանց պատկերացման մեջ տասնամյակների ընթացքում ստեղծվածն ընկալվել է որպես Ա. Պլատոնովի նկարագրած փոսորակը հիշեցնող գրոտեսկ:

Անորոշության ծայրահեղ պայմաններում, երբ նոր ճշմարտությունը երբեմն մերժվում է իբրև հին սուտ, իսկ մեզ շրջապատող այժմյան իրողության հայտնի դարձած ոչ միանշանակությունն ընդունակ է անցյալի նկատմամբ կարոտացավ ծնել, նոր գաղափարախոսությունն իբրև քննադատաբար իմաստավորված պատկերացումների, վարքագծի չափանիշների ու դրվածքների համակցություն, դժվարությամբ է մուտք գործում հասարակական կեցության և գիտակցության մեջ:

Գաղափարախոսների տեսական չարաշահումներում ենթադրված իրականությունը մարքսիզմի դասականներն իրավացիորեն բնութագրել են որպես պատրանքային, իսկ այդ հորինված, կեղծ իրականության հիմնական հասկացությունները (բացարձակ Իդեա, Աստված և այլն)՝ գաղափարախոսական հնարանքներ, «վերպատմական» ուժեր, որոնք գոյություն չունեն իրական պատմության մեջ: Դրանով հանդերձ, նրանք էլ գերազանցեցին այն իդեալիստական տեսակետը, ըստ որի մարդիկ գաղափարների, եսասիրական շահերի, այնկայլ քաղաքական դոկտրինների ստրուկն են: Հասարակական բոլոր կառուցվածքները, գիտակցության ձևերը, գաղափարները «ծագում են որոշակի անհատների կենսական պրոցեսից», հենց «իրենց նյութական արտադրությունն ու իրենց նյութական հաղորդակցումը զարգացնող մարդիկ իրենց այդ իրականության հետ միասին փոխում են նաև իրենց մտածողությունն ու իրենց մտածողության արգասիքները» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., **Երկեր**, հ. 3, Ե., 1987 թ. էջ 25,27):

Ընդգծելով, որ իրենց ուսմունքը դոգմա չէ, այլ սոսկ գործողության ուղեցույց, Մարքսը և Էնգելսը գործնական շարժման ամեն մի իրական քայլ վեր էին դասում «մի դյուժին ծրագրերից»:

Հասարակության մասին Մարքսի և Էնգելսի տեսությունը, որն արտացոլում էր XIX դարի իրողությունները, իր ժամանակի հեղափոխական բանվորական շարժման

ԿԱՊՏՈ ԱԼԵՔՍԱՆԴՐ ՍԵՄՅՈՆՈՎԻՉ— ԽՄԿԿ Կենտկոմի գաղափարախոսության բաժնի վարիչ:

պետք է ապացուցվի հայացքների ճշմարտությունը: XX դարի պատմական պրակտիկան այդ բանի համար հսկայական նյութ է տալիս: Այն նորից ու նորից համոզում է մեզ, որ տեսությունը չի կարող ավելի իրավացի լինել, քան կյանքն ինքը: Դրանից պետք է ելնել, երբ կյանքի պահանջով ինչ-որ բան մենք փոխում ենք մեր հայացքներում: Եվ ահա լենինիզմի նկատմամբ այդ իսկ ստեղծագործական վերաբերմունքը նրանում ամենագլխավորի՝ նրա ստեղծագործական ոգու, ճշմարտության որոնմանը և մարդկային երջանկության հաստատմանը հակվածության պահպանման լավագույն միջոցն է: Հենց այդ է լենինիզմի ոգին, թեև իրենց անանց արժեքն ու հրատապությունն են պահպանում նաև շատ այլ լենինյան գաղափարներ:

Գուցեև ամենակարևորը վերաբերմունքի մշակումն է այն գաղափարախոսության նկատմամբ, որն իշխում էր երկրում ստալինիզմի շրջանում և դրանից հետո, ընդհուպ մինչև 1985 թվականը: Վերջին ժամանակներս ստալինիզմի և նեոստալինիզմի բնույթը վերլուծող ոչ քիչ գիտական աշխատություններ են հրատարակվել, որոնք հնարավորություն են ընձեռում հասկանալու, թե ինչ է կատարվել կոմունիստական գաղափարախոսության հետ, թե ինչպես սոցիալիստական գաղափարին հաջողվեց ստալինիզմի սարդոստայնում կենդանի մնալ և, վերջիվերջո, տապալել այն: Դրանով հանդերձ, ստալինիզմի ժխտումը չպետք է բերի այն բանի ժխտմանը, որի տակ նա դիմակավորվել է, այն ամենի ժխտմանը, ինչն ապականվել, պղծվել է նրա կողմից: Դա կլիներ, ըստ էության, ապականման շարունակումը, որը կնշանակեր մարքսիզմի «մինչև իր հիմքն» ավերելը, պատմությունից այն դուրս նետելը, ինչը, տեղին է ասել, բացահայտ առաջարկում են որոշ հեղինակներ: Բայց այդպիսի «գաղափարախոսական նորացումը» կվերածվեր հասարակության նոր հոգևոր ճգնաժամի, որը կլիներ շատ ավելի խոր: Առաջադիմությունն այստեղ նիհիլիզմի մեջ չէ, այլ մարքսիզմի համամարդկային բովանդակության պահպանման ու բազմապատկման մեջ:

Նորացվող սոցիալիստական գաղափարախոսությունը պետք է հարաբերակցվի ժողովրդի ռեալ, դարավերջին շատ աճած ինտելեկտուալ և կրթական մակարդակին: Այնինչ գաղտնիք չէ, որ գաղափարախոսական շատ կանխադրույթներ, որոնք ակտիվ շրջանառության մեջ են նաև այժմ, նախանշված են այնպիսի մարդկանց համար, որոնք ապրում են միանգամայն այլ պայմաններում, կրթական և քաղաքական գիտակցության այլ մակարդակով: Բնական է, որ այդ կանխադրույթները ներկայումս սթափ քննադատական վերաիմաստավորման են ենթարկվում:

Վերակառուցման գաղափարախոսությունն իր բուն էությամբ սոցիալիստական գաղափարախոսություն է, արարման ու քաղաքացիական խաղաղության, սոցիալական կոմպրոմիսի ու համաձայնության, իսկական հումանիզմի գաղափարախոսություն: Այն ներառում է համամարդկային արժեքներն ու առանձնահատուկ շահերը, հասարակությունը չի բաժանում «բարեկամներ-թշնամիներ» սխեմայով, այլ համախմբում է նրան բարոյականության և օրենքի նկատմամբ հարգանքի հիման վրա:

Գաղափարախոսության տեսական հենքի և հասարակական գիտությունների վերակառուցումը դանդաղ է ընթանում: Վարչահրամայական համակարգի կողմից անբնական պայմանների մեջ դրված լինելով՝ հասարակագետներն ստիպված էին կառչել խիստ սխեմաներից, բայց և այսօր էլ նրանցից շատերը շարունակում են մտածել ավանդական կատեգորիաներով: Եվ այնուամենայնիվ հասարակագիտության մեջ իրադրությունն աստիճանաբար փոխվում է. վերաիմաստավորվել և նոր բովանդակությամբ են լցվում այնպիսի հասկացություններ, ինչպիսիք են դեմոկրատիան, ինքնակառավարումը, սոցիալական հավասարությունն ու արդարությունը, սեփականությունը և այլն: Քաղաքական բառապաշար են վերադարձվել իրենց պոզիտիվ նշանակությամբ ժամանակին դուրս նետված «քաղաքացիական հասարակություն», «իրավական պետություն», «բազմակարծություն» և այլ հասկացություններ: Դրանց օգնությամբ ձևավորվում ու ամրապնդվում է դեպի համամարդկային արժեքների, հումանիզմի և դեմոկրատիզմի գերակայությունը կողմնորոշված նոր մտածողությունը:

Բայց միևնույն ժամանակ կյանքը համառ կերպով հանգամանալից բանավեճ է պահանջում սոցիալիզմի հիմնական արժեքների, դրանց գործնական իրականացման եղանակի, կուսակցության կոնցեպցիայի, նրա գաղափարաքաղաքական պլատֆորմի վերաբերյալ, պահանջում է ոչ մարքսիստական հասարակական մտքի



և դրա իրական արդյունքների անկանխակալ վերլուծություն: Այդ բանավեճը փաստորեն ծավալվում է, բայց հանգամանալից լինելն էլ հենց պակասում է նրան: Նախկինում փակի տակ գտնվող շատ աշխատությունների պարզապես վերատպումը չի վերացնում սոցիալիզմի և նրա արժեքների պատմական հիմնավորման մասին հարցը, այլ միայն այդ հարցադրումն ավելի հրատապ է դարձնում:

Հասարակության և կուսակցության կյանքի ամենապատասխանատու փուլում պահանջվում են քաղաքագիտական լուրջ հետազոտություններ, ղեկավարման քաղաքական մեթոդների էության խոր իմաստավորում, առանց որի հնարավոր չէ ո՛չ կուսակցության՝ նոր մակարդակի բարձրանալը, ո՛չ ներկուսակցական կյանքի դեմոկրատացումը:

Խանդաշփոթությունը մտքերում ուղեկցվում է նորդոգմատիզմի ի հայտ գալով, թաքցնում է իր մեջ գաղափարախոսական որոգայթներ և անխուսափելիորեն առաջացնում երկվություն մարդկանց գիտակցության մեջ: Գոյություն ունեցողի տոտալ քննադատությունը, որին հասուն, ավարտուն կոնցեպցիաների անբավարարության դեպքում հաճախ տուն են տալիս ոչ ամենից շատ իրավասու և պատասխանատու անձինք, հասարակական գիտակցությունը դեպի նիհիլիզմ է մղում: Հասարակական գիտակցության մասսայական քաղաքականացման և բազմակարծիքայնացման մեր հասարակության համար աննախադեպ պայմաններում, երբ գրեթե բոլորն են խորհում ու դատում քաղաքականության մասին, հեշտությամբ պատրանքներ, երևակայական պատկերացումներ են հայտնվում հասարակական զարգացման շարժիչ ուժերի մասին: Առաջանում են նպատակներին ուղղակի հակադիր արդյունքներ, երբ ստալինիզմի, լճացման և դրանց «դոկտրինալ» աղբյուրների ամենասուր մերկացումները, ըստ էության, բացառում են հետագա օբյեկտիվ ու բարեխիղճ վերլուծությունը: Մենք երբեք չենք ճանաչի այն հասարակությունը, որում ապրում ենք, եթե կողմնակից լինենք մերթ այս, մերթ այն կանխակալ կարծիքներին: Քաղաքագետի համար իրականության միայն օբյեկտիվ վերլուծությունն է տալիս հավաստի գիտելիք:

Ցավոք, մինչև այժմ կուսակցության գաղափարախոսական գործունեության մեջ հաջորդայնությունը երբեմն մեկնաբանվում է այնպես, որ կարծես իրական քաղաքական ասպարեզում գործում են ոչ թե կոնկրետ մարդիկ, այլ նրանց դավանած տեսական սկզբունքները՝ նման աստվածային նախախնամության: Այդպիսի տրամաբանությամբ ժամանակակից կոմունիստները թվում է մասնակիցներ են իրենց նախորդների ամեն կարգի արարքների և այդ հիման վրա հաճախ նրանցից պահանջում են կոլեկտիվ խոստովանություն: Այստեղ ակնհայտ շփոթվում են մեղքի ու պատասխանատվության հասկացությունները, հավասարեցվում առաջնորդների և կուսակցական մասսաների դերը, համահարթվում անձնավորությունները: Ակնհայտ է, որ եթե կուսակցությունը անփոփոխ մնար, ապա նա չէր կարող այսօր վճռական նորացման ուղի դուրս գալ:

Վերակառուցումը լենինյան կուրսի մեխանիկական շարունակությունը չէ: Դա ռեակցիան է պահանջմունքների նկատմամբ այն հասարակության, որը գիտակցել է խոր սոցիալ-տնտեսական և քաղաքական ռեֆորմների անհրաժեշտությունը, իսկ նորացման գաղափարախոսությունը լենինյան գաղափարները պարզապես հավատարմորեն ընթերցելը չէ: Գաղափարախոսությունը նորացման շրջանում դառնում է ռեալիստական, դադարում է կախված լինել գաղափարախոսների «բարի կամքից»: Դա արդյունք չէ տեսական բանաձևերի միստիկական վերածննդի, այլ արդյունք է հասարակության կողմից հնացած գաղափարախոսական պատկերացումների ժխտման:

Ցավոք, դոգմատիկական ուսումնավարժության և սովորության պատճառով գաղափարական ոլորտի շատ աշխատողներ յուրաքանչյուր նոր դեպքում հայացք են ցցում սուրբ տոնացույցին, օբյեկտիվ իրականությունը հարմարեցնում վաղօրոք տրված սխեմաներին: Այսպես, բավականաչափ շատ վեճեր են այսօր մղվում սոցիալիզմի բնույթի և էության վերաբերյալ: Բայց տեսական միտքը դեռևս ավելի շատ ժամանակ է վատնում խորհրդային հասարակության անցյալ և ապագա վիճակի համար անվանում հայտնագործելու, քան նրա զարգացման աղբյուրներն ու հեռանկարները ուսումնասիրելու վրա:

Կյանքն ինքն է համառորեն պահանջում սոցիալիզմը դիտել գլխավորապես իբրև պրակտիկ շարժում, որը «պրակտիկ նպատակներ է հետապնդում պրակտիկ միջոցների օգնությամբ...» (Մարքս Կ. և Էնգելս Ֆ., Երկեր, հ. 3, էջ 239): Նման

մոտեցման դեպքում, որը թույլ չի տալիս ո՛չ նպատակների, ո՛չ միջոցների բացարձակացում, հասարակական պրակտիկան հասկացվում է որպես հասարակական կյանքի փոփոխման ու զարգացման պայման՝ հիմնված մարդկանց շահերի ու պահանջմունքների և շատ այլ օբյեկտիվ ու սուբյեկտիվ գործոնների առավել հաշվառման վրա, որոնք մարդկանց միմյանց ու բնական միջավայրի նկատմամբ հարաբերությունների բուն էությունն են կազմում:

Մարդկային գործունեությունը լայն ըմբռնմամբ այն անընդհատ պրոցեսն է, որի ընթացքում տեղի է ունենում նպատակների ու միջոցների մշտական նորացում, իրագործվում է զարգացման նոր ձևերի մշտական որոնում: Մտածողության դիալեկտիկական պարադիգման, Վ. Ի. Լենինի խոսքերով ասած, ենթադրում է «մեր տակտիկան արագ և կտրուկ փոխելու հմտություն, հաշվի առնելով փոխված օբյեկտիվ պայմանները, մեր նպատակի համար ընտրելով ուրիշ ուղի, եթե առաջվա ուղին տվյալ ժամանակաշրջանի համար աննպատակահարմար, անհնարին դուրս գա» (Վ. Ի. Լենին, **ԵԼԺ**, հ. 44, էջ 151): Հենց այդ պատճառով էլ դոկտրինան, տեսությունը դիալեկտիկական մտածողության համար երբեք ինքնանպատակ չէ:

«Սոցիալիզմ» հասկացությանը առդրվող «գիտական» բառը նշանակում է, որ սոցիալիստական տեսությունը հիմնվում է ամենից առաջ օբյեկտիվ և ճշգրիտ գիտելիքի վրա: Հասարակական զարգացման նպատակների կամայական հորինումը և դրանք հասարակության վզին փաթաթելը ուտոպիզմ է ու պրոժեկտյորություն: Վերջին հաշվով մեր հասարակության զարգացման նպատակը ոչ միայն ապագայում, այլև ներկայում կոնկրետ մարդիկ են: Եվ այդ նպատակը պարտավորեցնում է ոչ թե գաղափարախոսական կեղծիքներ հորինել, այլ ուսումնասիրել կյանքը, նրա հակասությունները, բացահայտել զարգացման միտումները՝ ժամանակին ի հայտ բերելով խոչընդոտները առաջադիմական վերափոխումների ճանապարհին:

Այնինչ «սոցիալիզմ» հասկացությունը ամենուրեք մեկնաբանվում է որպես մի ինչ-որ վերպատմական սուբստանցիա, որը արիստոտելյան «թելոսի» նման շարժում է իրական երևույթների ու պրոցեսների աշխարհը: Իսկ դա այլ բան չէ, քան պատմության՝ գիտությունից շատ հեռու թելեոլոգիական ըմբռնում, որը ելնում է «նպատակ» կատեգորիայի իդեալիստական բացարձակացումից: Այդպիսի հայացքը օրինաչափորեն հանգեցնում է կոնկրետ պատմական պրակտիկայի քարացածության և վերլուծության ոլորտից նպատակին հասնելու միջոցների դուրս մղման: Հասարակական զարգացման թելեոլոգիական ըմբռնման քննադատությունը, որ արդեն անցած դարում ձեռնարկել էին Ֆոյերբախը, Մարքսը, Էնգելսը և այլ մտածողներ, ցույց տվեց, որ մարդկանց գործողությունները, նրանց նպատակները բխում են նրանց պահանջմունքներից ու շահերից և հենց դրանք էլ պետք է լինեն հասարակության մասին գիտության վերլուծության առարկան:

Ռևիզիոնիստի պիտակն առաջ փակցվում էր բոլորին, ով ուշադրություն էր դարձնում կյանքի ռեալ պահանջմունքներին քարացած գաղափարախոսության կանխադրույթների անհամապատասխանության վրա: Սիստեմի արմատական ռեֆորմների անհրաժեշտությունը դիտվում էր որպես հակասոցիալիստական և նոր հասարակարգի էության հետ բացարձակապես անհամատեղելի մի բան, որն իբր իր կատարելությամբ բնավ կարիք չունի իր «անսասան» հիմքերի ու սկզբունքների նորացման:

Այդ ջատագովական ֆետիշի մեջ, ինչպես ջրի կաթիլում, արտացոլվում էին պաշտոնական ճարտասանության ամբողջ ներքին թուլությունն ու անճարակությունը, որի բնորոշ հատկանիշն էր անտեսումը մարդկանց ռեալ սոցիալ-քաղաքական, տնտեսական ու հոգևոր պահանջմունքների, այն մարդկանց, որոնց այդ ճարտասանությունը վկայակոչում էր իր փաստարկներում: Օբյեկտիվորեն գոյություն ունեցող հասարակական կապերի ողջ բազմազանությունը գաղափարախոսներն ու պրոպագանդիստները կամայականորեն հանգեցնում էին խորհրդային մարդկանց խաբուսիկ բարոյաքաղաքական միասնությանը և կուսակցության ու պետության ղեկավարների անաղարտ քաղաքականության նկատմամբ նրանց գրեթե նախանձելի նվիրվածությանը: Մինչդեռ ըստ էության այդ վերացական սկզբունքները բխեցվում էին գունազարդված անցյալից, նախորդ սերունդների անձնազոհությունից: Ներկայի ինքնուրույն նշանակությունը և առաջնությունը արժեզրկվում էին: Այժմյան սերնդի կյանքը ենթարկվում էր մերթ անցյալին, մերթ ապագային:

Ըստ հնարովի տեսական սխեմայի փառապանծ հեղափոխական անցյալը մի տեսակ ինքնին պետք է վերափոխվեր կատարյալ ապագայի: Իդեալի և իրակա-



նության, գաղափարախոսության և իրողության միջև բացահայտ հակասությունը բացատրվում էր խոսքի և գործի միջև խզումի մասին ճղճիմ ֆրազով: Ո՛չ հասարակական միտքը, ո՛չ քաղաքական պրակտիկան նույնիսկ փորձ չէին անում բացահայտելու այդ հակասության սոցիալական արմատները: Բանականությամբ և կամքով օժտված ու նաև անող պահանջմունքներով էլ տարբերվող իրական սուբյեկտներին փոխարինեցին անդեմ արտադրողական ուժերը, ֆորմացիոն օրենքները, նոր հասարակարգի անհաղթելի միտումները, «առավելությունները», սոցիալիստական արտադրության պլանայնությունն ու պլանաչափությունը և այլն: Հասարակական զարգացման, ընդ որում համաշխարհային մասշտաբով, սխեմատիկան ուրվագծում էր մի ինչ-որ «վերպատմական» իդեալ, որին համապատասխան քաղաքական դոկտրինան կոնկրետ անհատներին զոհ էր դարձնում «համընդհանուրին»: Իր ֆուտուրոլոգիական ուղղվածությամբ այն գաղափարախոսությունը, որն այսօր պայմանականորեն լճացում են անվանում, իր վրա կրում էր մեսիանականության և պաշտոնապես մերժվող գռեհիկ կրոնական վախճանաբանության բացահայտ արտահայտված գծեր:

Ահա հենց այս իռացիոնալ գաղափարախոսությամբ էլ, որը, ցավոք, ներդրվել էր մասսայական գիտակցության և ապրելակերպի խոր շերտերում, խորհրդային հասարակությունը մուտք գործեց արմատական սոցիալական ռեֆորմների ժամանակաշրջան:

Անշուշտ ասվածը չի նշանակում սոցիալիստական իդեալների նսեմացում: Հեղափոխության այդ ազնիվ ու լուսավոր իդեալները համապատասխանում են միլիոնավոր մարդկանց պահանջմունքներին: Պատահական չէ, որ այն հարցը, թե արդյո՞ք սոցիալիզմ կառուցված է մեր երկրում, տրամաբանական ծուղակի մեջ է գցում շատ տեսաբանների, քանի որ նրանք փորձում են միանշանակ հետևություն անել երկրի անցած ճանապարհի արդյունքների մասին: Բայց կարելի՞ է, լինելով ռեալիստ, դատել «սոցիալիզմի կառուցման»՝ որպես ավարտված պրոցեսի մասին: Ավելի ճիշտ չէ՞ համարել, որ սոցիալիզմը մշտական շարժում է դեպի ավելի բարձր նպատակները և մշտական ռեֆորմները իմմանենտ պահանջմունքն է սոցիալիզմի զարգացման:

Աննորմալ և շատ բաներում նույնիսկ այլանդակ զարգացման հետևանքով մեզ մոտ գոյացել է մի հասարակություն, որն անկարելի է բնորոշել միանշանակ: Միանգամայն ակնհայտ է, որ սոցիալիզմին հակասում են բյուրոկրատիայի ճնշիչ ազդեցությունը, դեմոկրատական հասարակական ինստիտուտների թույլ զարգացածությունը, ճչացող սոցիալական պրոբլեմները: Բայց չէ՞ որ պաշտոնական գաղափարախոսության և մասսայական գիտակցության մեջ այսպիսի ըմբռնում է հաստատվում միայն այժմ: Մինչև վերջերս խորհրդային հասարակության բնույթի մասին քննադատական առումով հարց չի դրվել: Հապա ի՞նչ տեղի ունեցավ: Ի՞նչը փոխվեց. հասարակությու՞նը, թե՞ նրա մասին պատկերացումը: Հավանաբար և՛ մեկը, և՛ մյուսը: Արթնացած հասարակական գիտակցությունը հասարակությանն ավելի ու ավելի բարձր պահանջներ է առաջադրում: Ինքը՝ հասարակական ամբողջն է շարժման մեջ մտել, և դրա պատճառը մեր հասարակության մեջ, նրա զարգացման տվյալ փուլում, տնտեսական, քաղաքական ու գաղափարական գործոնների բարդ միակցման մեջ է:

Սովորական ստերեոտիպերի արմատական բեկումը նախորդ գաղափարախոսական խաբեության մերկացմամբ բացատրելը ակնհայտորեն անբավարար է ու մակերեսային: Պաշտոնական գաղափարախոսության կեղծությունը, թեպետև այն ժամանակ հասարակության կողմից նրա ուղղակի քննադատությունն անկարելի էր, բայց աննկատ չմնաց նաև լճացման տարիներին: Ըստ երևույթին վարչահրամայական համակարգի սնող արմատները պետք է փնտրել ոչ միայն խաբեության և հարկադրանքի մեջ, այլ նաև հասարակության ողջ դժվարին քաղաքական պատմության, դեմոկրատական ինստիտուտների ու ավանդույթների անզարգացածության և, բարիս ամենալայն իմաստով, պահանջմունքների ցածր մակարդակի մեջ: Մյուս կողմից, հազիվ թե մեկնումեկը կժխտի, թե նոր հայացքներն ու պատկերացումները կարմատավորվեն և հասարակական գիտակցության մեջ իշխող կդառնան ամենից առաջ շնորհիվ խոր սոցիալական վերափոխումների՝ դեմոկրատացման, հրապարակայնության, քաղաքական համակարգի հիմքերի ամրապնդման և այլն:

ԽՄԿԿ գաղափարաքաղաքական կողմնորոշումը նոր պայմաններում չի կարող արտահայտված լինել միանշանակ «հրամայական» ձևով, և դա այն բանի պատ-

ճառներից մեկն է, որ այդ կողմնորոշումը դեռևս մինչև վերջ չի գիտակցվել կուսակցության բոլոր անդամների, այդ թվում նաև գաղափարախոսական աշխատողների կողմից, որոնք սովորել են հնազանդվել միայն կենտրոնի դիրեկտիվներին: Կարելի է սպասել, որ նույնիսկ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի հրապարակումը չի հաղթահարի բոլոր անճշտակությունները: Պլատֆորմի նախագիծն ավելի շուտ հիմք կծառայի ԽՄԿԿ ռեֆորմի, գաղափարախոսական նորացման և ինքնակառավարման վերաբերյալ համակուսակցական բանավեճի համար սոցիալ-քաղաքական նոր պայմաններում, երբ վերակառուցման քննադատական մասը ձեռք է բերում այն բնական համամասնությունները, որոնք և պետք է լինեն նորմալ կերպով զարգացող հասարակության մեջ: Բայց եթե քննադատությունը մտնում է նորմալ հունի մեջ, ապա անհրաժեշտաբար հարց է ծագում այն մասին, թե որո՞նք են այն ընդհանուր արժեքները, որ հնարավոր են դարձնում տարբեր հասարակական ուժերի երկխոսությունն ու համագործակցությունը, որո՞նք են արարման և առաջադիմության ուղուն վերադառնալ ձգտող հասարակության հիմնարար պոզիտիվ կողմնորոշումները:

Ցանկացած դեմոկրատական հասարակության մեջ կարևորագույն արժեքներ են ճանաչվում սոցիալական հավասարությունն ու արդարությունը: Ընդ որում սոցիալիստական դեմոկրատիայի շրջանակներում այդ արժեքների հիմնավորումն աշխարհայեցողության առումով կարող է ամենաբազմազան լինել: Միայն այդ պայմաններում գաղափարախոսությունը կկատարի իր կոնստրուկտիվ դերը սոցիալիստական հասարակության նորացման պրոցեսում: Եվ այստեղ կարելի է առանձնացնել այսպիսի հիմնական ասպեկտներ:

Դրանցից առաջինը գաղափարախոսական ազդեցության բոլոր ձևերի ու մեթոդների, զանազան միջոցների օգտագործումն է վերակառուցման շրջանակներում իրագործվող արմատական ռեֆորմները պաշտպանելու համար: Հասարակության կյանքի բոլոր կողմերի որակական նորացումը մեր երկրի բոլոր ժողովուրդների ընդհանուր ճակատագիրն է: Իրենց դարն ապրած հասարակական կառուցվածքներին ու հարաբերություններին ոչ մի արդարացում չկա: Սոցիալ-քաղաքական և տնտեսական վերափոխումները ենթադրում են երկրի պատմական անցյալի, համաշխարհային զարգացման փորձի, արտասահմանյան հասարակական մտքի, գիտության ու տեխնիկայի նվաճումների ստեղծագործական, համակողմանի իմաստավորում և այդ նվաճումների ներդրում նորացման ստրատեգիայում՝ հաշվի առնելով մեր ավանդույթների ու հասարակական հոգեբանության առանձնահատկությունները:

Երկրորդ: Հասարակության նորացումն իր իսկ՝ ժողովրդի գործն է: Այստեղ ընդունելի չեն շաբլոնները, թելադրանքները, ունիվերսալ նմուշներ, կոնկրետ լուծումներ ու մասնավոր ստրատեգիաներ պարտադրելը: Արտադրական կոլեկտիվները, գյուղատնտեսության և այլ բնագավառների աշխատողները իրավասու են իրենք վճռելու, թե իրենց համար աշխատանքային գործունեության կազմակերպման ու կառավարման ինչպիսի ձևերն են գերադասելի: Արդեն իսկ այժմ, չնայած էկոնոմիկայի «փլուզման» մասին շատ դատողություններին, հնարավորություն կա ընդունված օրենքների հիման վրա եռանդուն գործողություններ ձեռնարկել ու կարգի բերել տնտեսության և կառավարման ուղղությամբ հստակ ու ներդաշնակ աշխատանքը՝ ամրապնդելով կոլեկտիվ և անձնական ինքնուրույնության ոգին: Դեմոկրատիայի, տնտեսական ազատության պայմաններում տնտեսական գործունեության արդյունքներով շահագրգռված են առաջին հերթին իրենք՝ արտադրողները: Դա կարևոր ուղղում է ամբողջ գաղափարախոսական և պրոպագանդիստական աշխատանքի համար:

Երրորդ: Մեր ժամանակի պաշտամունքն են դառնում հասարակական և անձնական նախաձեռնության խթանումը, բարձր մասնագիտական աշխատանքին նյութապես ու բարոյապես աջակցելը: Իրական ձեռքբերումները հնարավորություն են ընձեռում օբյեկտիվորեն գնահատելու ցանկացած պրակտիկ գործունեություն: Տնտեսության, գիտության, կրթության, սոցիալական քաղաքականության մեջ բոլոր մակարդակներում հաջողության չափանիշ կարող է լինել միայն արդյունքը: Սոցիալական քաղաքականության այդպիսի կողմնորոշումը ենթադրում է նաև մշտական հոգատարություն իրավագիտակցության, բարոյական բարձր նորմերի հաստատման ու զարգացման մասին:

Չորրորդ: Տնտեսական արդյունավետությունը և ժողովրդի կյանքի մակար-



դակի բարձրացմանն ուղղված արմատական ռեֆորմներն անիմաստ են առանց ժամանակակից տեխնոլոգիաների, շուկայի կարգավորման, պլանավորման, սոցիալական հոգեբանության, ինժեներիայի բնագավառներում հատուկ մասնագիտական գիտելիքների տիրապետման: Մասնագետները, գիտնական հասարակագետները, որոնք այժմ լրջորեն վերլուծում են ժամանակակից կրթության, ժողովրդական տնտեսության համար կադրերի պատրաստման խնդիրներում մեր հետ մնալու պատճառները, պետք է ձեռնարկեն այստեղ կուտակված պրոբլեմների արդյունավետ լուծմանը:

Հասարակայնորեն օգտակար աշխատանքի կարգապահությունն ու կազմակերպվածությունը առաջնահերթ խնդիր և կարևորագույն քաղաքացիական պարտք են դառնում: Դեմոկրատական կարգը հիմքերի հիմքն է այն հասարակարգի, որը պետք է փոխարինի հնին: Կոչերով ու միտինգային հույզերով կյանքի քաղաքակիրթ ձևեր, նյութական բարեկեցություն չեն կարող ստեղծվել: Դա շատ պարզունակ ճշմարտություն է, բայց պետք է մենք դա ապացուցենք այնքան ժամանակ, քանի դեռ հասարակական ունեցվածքի վերաբաշխման մասին անվերջ խոսակցություններից չենք անցնի մեկ այլ անհրաժեշտության՝ աշխատանքի ժամանակակից կազմակերպման և ըստ քանակի ու որակի այն վարձատրման հիման վրա հասարակական հարստությունն աճեցնելու անհրաժեշտության գիտակցմանը:

Տպավորություն է ստեղծվում, թե վերակառուցման ընթացքում առաջ եկած բազմաթիվ հասարակական շարժումներն իրենց գլխավոր նպատակն են դարձրել ճգնաժամի, որպես այդպիսինի, քննադատությունը: Այն մասին, որ երկրում իրավիճակը բարդ է, գիտեն բոլորը, և այդ բանում միմյանց համոզել պետք չէ: Խնդիրն այն է, որ համատեղ գտնվեն ճգնաժամից դուրս գալու ուղիները, իսկ դրա համար անհրաժեշտ է սիստեմատիկ և ներդաշնակ ստեղծագործական աշխատանք: Հասարակայնորեն օգտակար աշխատանքը, այդ թվում և անհատույց ձևով տրվողը, միշտ հանդես է եկել որպես հզոր համախմբիչ ուժ, մարդկանց միաձուլող գործոն: Մյուս կողմից՝ միշտ գտնվել են և հիմա էլ են հայտնվում մարդիկ, որոնց ձեռնտու է իրենց պատվախնդիր նպատակներով օգտագործել աշխատանքային լարման համընդհանուր անկումը:

Հասարակության նորացումն անկարելի է առանց նրա համախմբման, առանց վերակառուցման հիմնական նպատակների շուրջը բնակչության միավորման: Դա բնավ չի նշանակում հակասությունները սքողող բարեգութ միասնություն: Հակասություններ ցանկացած հասարակության մեջ կան և կլինեն: Ամբողջ հարցն այն է, թե ինչպես տանել գաղափարախոսական աշխատանքը, որպեսզի խանգարվի բնակչությանը տնական բախումների մեջ քաշելը, բացառվի հասարակության բոլոր դեմոկրատական ուժերը համախմբելու դժվարությունը չարաշահելու հնարավորությունը, մերկացվեն և մեր կյանքից հեռացվեն «ստվերային էկոնոմիկայի» գործամոլները, սոցիալական պորտաբույծները, հանցավոր ու կաշառակեր տարրերը:

Նորացվող գաղափարախոսությունն արդեն օգնել է հասարակությանը լավ հասկանալու իր սեփական պրոբլեմները: Եվ այդ պրոցեսը շարունակվում է: Իսկականի ու պատշաճի պատկերացումներն իրականության և նրա մասին պատկերացումների փոփոխության ընթացքում կոնկրետացվում են:

Սոցիալիստական գաղափարի նոր արժանիքները, որոնք հանդես են գալիս որպես ժամանակի կանչի ներհատուկ պատասխան, ռեալիզմն է և սխոլաստիկայից ու պրոժեկտյորությունից հրաժարվելը: Նոր գաղափարախոսությունը, պատկերավոր ասած, աշխարհն ազատ է «արձակում»: Եվ դա այն իմաստով, որ վարչահրամայական համակարգի իշխանության երկար տարիները մասսաներին սովորեցրել էին մի այնպիսի կարգի, երբ նրանց համար որոշումներ էին ընդունում ուրիշները, իսկ նրանք գործում էին այդ որոշումների շրջանակներում: Բայց հիմա վրա է հասնում այլ ժամանակ. մտածելու, որոշում ընդունելու և դրանց անպայման կատարման համար պատասխան տալու հնարավորություն են ստանում բոլորը: **Ազատության բեռը,** ինչպես ցույց տվեց կյանքը, շատերի համար ուժից վեր դուրս եկավ: Շատերի մոտ այն շփոթություն առաջացրեց: Եվ դա հասկանալի է: Ինքնուրույնության ստիպողական բթացումը շատ հեռուն գնաց: Իսկ այժմ ստիպված սեփական բախտի համար պատասխանատվություն պետք է ստանձնել:

**Քաղաքական ոլորտում պատասխանատվություն ստանձնելը** նշանակում է հրաժարվել ամենուրեք տարածված այն կարծիքից, թե հասարակություն կառավարելն ընտրվողների և ընտրյալների գործն է: Ընդ որում քվեարկությունը, մի-

տինգները, քննարկումները սոսկ էպիզոդ են ժողովրդական ինքնակառավարման համակարգում: Խոսքը վերաբերելու է ավելինի՝ քաղաքական աշխատանքում բնակչության լայն գործնական և մշտական մասնակցությանը:

**Տնտեսական ոլորտում պատասխանատվությունն ստանձնելը** նշանակում է ոչ միայն մասնակից դառնալ հասարակական արտադրության պրոցեսին, այլև նրա իսկական տերը դառնալ: Երկրում ստեղծվող նոր տնտեսական միջավայրը, հասարակական սեփականության ձևերի բազմազանությունը, տնտեսավարման նոր ձևերի զարգացումը՝ այս բոլորը նախաձեռնության, տիրոջ խելամտության, ջանասիրության դրսևորման նախկինում չտեսնված հնարավորություն է բացում:

Սոցիալական ոլորտում պատասխանատվությունն ստանձնելը նշանակում է հրաժարվել խնամառությունից, պետությունից, հասարակությունից բարիքներ սպասելուց, որն ըստ էության սոցիալական համաճարակ է դարձել: Աշխատունակ ոչ մեկն իրավունք չունի իր պարտականություններն ուրիշի վրա դնելու: Հարցն այսպես է դրված այսօր: Յուրաքանչյուրն իր ուժերի և ընդունակությունների չափով հոգ է տանում իր սեփական և իր ընտանիքի բարօրության համար: Որքա՜ն արագ մենք կառաջադիմեինք բնակարանային, պարենային պրոբլեմների լուծման, մյուս սոցիալական խնդիրների կատարման գործում (իսկ այժմ առաջին պլան է մղվում շրջապատող միջավայրի, պատմամշակութային ֆոնդի վիճակի մասին տագնապը և այլն), եթե իր ժամանակին ոչ թե արգելեինք, այլ խթանեինք անհատական և կոլեկտիվ նախաձեռնության զարգացումը:

**Ազգամիջյան հարաբերությունների ոլորտում պատասխանատվությունն ստանձնելը** նշանակում է այդ ոլորտում հստակ մարդասիրական դիրքորոշում ունենալ, այլ ազգության անձանց նկատմամբ չձեռնարկել ոչ մի այնպիսի քայլ, որն անցանկալի է քո իսկ սեփական կեցության համար, այն ազգի գոյության համար, որին դու ինքդ ես պատկանում: Ազգամիջյան հարաբերություններում ամեն չար արարք անդրադարձ հարվածով խփում է նրան, ով վիրավորանք ու անարդարություն է թույլ տալիս: Այս ոլորտում զիջողությունն ու հարգանքը անձի ուժեղագույն հատկանիշներն են:

**Հոգևորի ոլորտում պատասխանատվությունն ստանձնելը** նշանակում է ոչ թե խոսքով, այլ գործով մշտապես ավելացնել մարդկության կուտակած հոգևոր հարըստությունների վերաբերյալ գիտելիքը, պայքարել ընդդեմ գորշության, խղճուկության, կոպտության: Մասսայական մշակույթը մեզ մոտ պետք է դառնա ոչ թե հոգեպես աղքատների հավասարապաշտության, այլ յուրաքանչյուր անձի իսկական ինտելեկտուալ վերելքի մի ասպարեզ:

**Պետական-իրավական ոլորտում պատասխանատվությունն ստանձնելը** նշանակում է հետևողականորեն պահպանել պետական օրենքներն ու բարոյական նորմերը, մերժելով պետական ինստիտուտների բռնի ավերման, օրինակարգի թուլացման փորձերը: Քաղաքացու պարտքն ու խիղճը այն հասկացություններն են, որոնք իրավական պետության ստեղծման պայմաններում դեռ պետք է հագեցվեն նոր բովանդակությամբ: Ընդդիմակայության, թշնամանքի մթնոլորտ ներմղելը, որի տրամաբանական ավարտն է սոցիալական լարվածությունը, ընդհարումներն ու մարդկային ողբերգությունները, ձեռնտու է կազմալուծիչ կամ էլ պահպանողական ուժերին, և այդ բանն այսօր ավելի հստակ է երևում, քան երեկ: Երկիրը փլուզելու, վերակառուցումը ձախողելու այդ ուժերի ձգտումը հասարակությունն առաջին անգամ կհակադրի համընդհանուր համաձայնության, փոխըմբռնման, փոխադարձ հարգանքի և բառիս ամենալայն իմաստով՝ համախմբման առավելությունների հստակ պատկերացումը: Խոսքն, իհարկե, հնազանդ համախոհության մասին չէ, երբ մեկը մտածում է, իսկ բոլորը ծափահարում են նրա իմաստնությանը: Ո՛չ, այդպիսի հլու-հնազանդությունն ու «բարոյաքաղաքական» միասնությունը մեզ պետք չեն: Խոսելով համախմբման մասին, հարկավոր է նկատի ունենալ այն ամենի հեռացումը, ինչը խանգարում է առաջադիմության ուղիով շարժվելուն, մանավանդ, եթե այն սպառնում է հասարակության գոյությանը: Համախմբման, որպես հասարակական մեծ բարիքի համար, բոլորին է պետք պայքարել: Համերաշխություն վերակառուցման հետ՝ ահա ընթացիկ պահի գլխավոր գաղափարը: Գաղափարախոսական ոլորտում մենք այժմ հնարավորություն ունենք ակնառու կերպով, համեմատական տվյալների վրա ցույց տալու, թե ինչ է բերում հասարակությանը հակադրման, ազգային սահմանափակության, առճակատման գիծը և ինչ են մարդիկ ստանում



դրա փոխարեն, երբ նրանք հանդես են գալիս որպես քաղաքակիրթ հասարակության քաղաքացիներ:

Ռեալիստական քաղաքականությունը չի կարող կառուցվել իսկական հասարակական հարաբերությունների, դասակարգերի, սոցիալական խավերի ու խմբերի իրական վարքագծի, ինչպես և նրանց շահերի մասին կեղծված տվյալների վրա: Այն պետք է հիմնվի այդ կազմավորումների ինչպես ներսում, այնպես էլ միմյանց միջև սոցիալական կապերի ամբողջ կոնկրետ բազմազանության համակողմանի վերլուծության ու հաշվառման վրա: Այդպիսի վերլուծությունն արդյունավետ է այն պատճառով, որ օբյեկտիվ հիմք է տալիս դասակարգերի, խավերի ու խմբերի ներսում առաջադիմական և պահպանողական տարրերի առանձնացման համար, բացահայտում է սոցիալական կոնֆլիկտների ու լարվածությունների աղբյուրները: Դրա հետ միասին, և դա ամենագլխավորն է, հասարակության մասին ունեցած օբյեկտիվ գիտելիքը հնարավորություն է ընձեռում ժամանակին լուծելու կամ համաձայնեցնելու առաջ եկած հակասությունները՝ հաշվի առնելով գոյություն ունեցող շահերի բազմազանությունը: Դիալեկտիկայի այդ վերածնունդը և նրա սկզբունքների կիրառումը խորհրդային հասարակության ռեալ վիճակի նկատմամբ համառ անհրաժեշտություն է դառնում բազմակացութաձև տնտեսության և հասարակական կյանքի ընդարձակվող և խորացող դեմոկրատացման պայմաններում:

Շեշտը համերաշխության և հասարակական կարգապահության վրա դնելը թելադրվում է ոչ կոնյունկտուրային նկատառումներով և նույնիսկ ոչ խորհրդային հասարակության քաղաքական կենսագրության առանձնահատկությունների բերումով, մի հասարակություն, որն իրագործում է ողջ կյանքի ու պետական կառուցվածքի դեմոկրատական ձևերին անցնելու ամենաբարդ ժամանակաշրջանը: Հասարակական արժեքների համակարգը հաստատուն հիմք է ամեն մի քաղաքակիրթ պետության սահմանադրության, որը սոցիալական առաջադիմության հնարավորության և նրա կայունության կարևորագույն նախադրյալն է: Հասարակական համաձայնությունը, որը հիմնված է իրավական պետության օրենքներում ամրապնդված դեմոկրատական արժեքների վրա, անհրաժեշտ պայմանն է, որ ինքն իր առջև է դնում առաջադիմության ձգտող հասարակությունը:

Իր XXVIII համագումարի նախօրեին կուսակցությունը դժվարին քննություն է բռնում ազատագրված ժողովրդի առջև, որի քաղաքական կամքն այսուհետև հասարակական վերափոխումների վճռական գործոնն է դառնում: Հրաժարվելով հասարակության մեջ մենաշնորհ վիճակից, կուսակցությունը չի հեռանում սոցիալական պատասխանատվությունից և ակտիվ քաղաքական գործունեությունից: Հասարակությանն առաջարկելով խոր ռեֆորմների ստրատեգիան, ԽՄԿԿ-ն դա անում է հրապարակայնության, դեմոկրատիզմի, բացահայտության պայմաններում՝ առաջավոր հասարակական ուժերի հետ համագործակցելու համար: Այն լայն ու իրավահավասար երկխոսության մեջ է մտնում այդ ուժերի հետ, որը սոցիալիստական արժեքների հիման վրա ապահովում է փոխադարձ հարգանք և զանազան սոցիալական խավերի ու խմբերի, ռեգիոնների, հանրապետությունների, ազգերի ու ազգությունների սուվերեն շահերի ճանաչում:

Հասարակական կյանքի տոտալիտար առիթմիա, կոնֆորմիզմ և անտարբերություն ծնող մենաշնորհությունից քաղաքացիական ազատությունների, քաղաքակրթվածության, իրավական պետության անցնելու համար ԽՄԿԿ-ն պայքարում է դեմոկրատական մեթոդներով՝ իր քաղաքականությունը կառուցելով նոր իրողությունների հաշվառման վրա և յուրացնելով համաշխարհային հասարակական մտքի, քաղաքակրթության ու մշակույթի բոլոր պտղաբեր շերտերը, հավատարիմ մնալով իր սոցիալիստական ընտրությանը:

ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում չկան առաջվա աղանդավորությունը, անսխալականության պատվախնդիր հավակնությունները: Դեմոկրատական հասարակության մեջ նա իր դերը տեսնում է այն բանում, որ լինի քաղաքական այնպիսի պարագլուխ, որի հեղինակությունը հիմնվում է ամենից առաջ գաղափարների ուժի, ազնիվ քաղաքականության, մեր մեծ, բազմազգ հայրենիքի դեմոկրատական և հումանիստական ավանդույթներին նվիրվածության վրա:

«Коммунист», № 6, 1990.

# ՀՈՒԶՈՂ ԽՆԴԻՐ

ԿՈՒՍԱԿՑՈՒԹՅԱՆ XXVIII ՀԱՄԱԳՈՒՄԱՐԻ առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում, ցավոք, աննշան տեղ է հատկացված կուսակցական կադրերի ընտրության ու տեղաբաշխման հարցին։ Իսկ դա շատ կարևոր է, մանավանդ եթե նկատի ունենանք, որ երկրում բուռն կերպով ծավալվող վերակառուցման ընդհանուր ընթացքից կուսակցությունը նկատելիորեն հետ է մնացել և այսուհետ նույնպես կկորցնի իր դիրքերը, եթե ինքն արագորեն չվերակառուցվի և արմատական որակական փոփոխություններ չկատարի իր շարքերում ու կառուցվածքում։ «Նախահամագումարյան բանավեճի ընթացքում, — ասված է պլատֆորմի նախագծում,— պետք է քննարկել բոլոր ընտրովի կուսակցական մարմինների դերի, իրավունքների ու ֆունկցիաների բովանդակությունը ընդլայնելու հարցը»։ Բայց ինչպե՞ս և ի՞նչ նպատակով՝ այդ մասին ոչինչ չի ասված։ Չի ասված նաև, որ ընտրովի կուսակցական մարմինների աշխատանքի բովանդակությունը ամենից առաջ պայմանավորված է կենդանի մարդկանցով, անհատ կոմունիստների բարոյական ու քաղաքական վարքագծով, որն ակնհայտորեն խաթարված է և չի կարող մտահոգություն ու տագնապ չառաջացնել ոչ միայն կուսակցության շարքերում, այլև հասարակության մեջ։

Կուսակցության խոր ճգնաժամը, որի մեջ այսօր նա հայտնվել է, թերևս նրա կենսագործունեության ոչ մի ոլորտում այնպես ցայտուն չի արտահայտվում, ինչպես կադրերի խնդրում։

Իբր համատարած գրագիտության երկիր ենք։ Բայց այսօր ասում են, թե կադրերի սով է մեզանում։ Ինչո՞ւ։ Արդյոք ամլացե՞լ է ժողովուրդը, դադարե՞լ է տաղանդներ ծնելուց։ Ո՛չ, իհարկե։ Տաղանդների պակաս չկա, այդ թվում նաև վարչական աշխատանքի ընդունակ տաղանդների։ Բայց նրանք մեծիմասամբ հրապարակում չեն, այլ՝ ստվերի տակ։

Երբ խոսք է բացվում թափուր որևէ պաշտոնում մարդ նշանակելու մասին, հաճախ ասում են, թե հարմար մարդ չկա։ Բայց կար ժամանակ, երբ Հայաստանը բարձրորակ կադրեր էր տալիս երկրի ուրիշ հանրապետություններին՝ կուսակցական, խորհրդային, ռազմական։

Ինչո՞ւ է ստեղծվել այսպիսի իրավիճակ։ Հիմնական պատճառներից մեկն այն է, որ կուսակցությունն իր ձեռքն է վերցրել բոլոր մասնագիտությունների և բոլոր մակարդակների կադրերի ընտրության ու տեղաբաշխման մենաշնորհ իրավունքը։

Կուսակցությունը, եթե, իրոք, մտահոգված է այս ոլորտում գործերը շտկելու խնդրով, ապա պետք է հրաժարվի կադրերի ընտրության ու տեղաբաշխման՝ ինքը միայն իրեն վերապահած իրավունքից։ Վերջին հաշվով ի՞նչ է նոմենկլատուրան։ Ընտրյալների համախմբում, ընտրախավ։

Այժմ տեսնենք, թե ինչպես է ստեղծվում այդ ընտրախավը։ Քաղաքացին չի կարող հասարակության մեջ բարձր դիրքեր ակնկալել, եթե կոմկուսի անդամ չէ։ Այստեղից էլ՝ անսանձ կարիերիզմը կուսակցության մեջ։ Դեռ շատ երիտասարդ տարիքից աշքարացներին ու ճարպիկներին, այլ ոչ թե խելոքներին ու պարկեշտներին մենք տեսնում ենք կոմերիտական աշխատանքում։ Այսինքն՝ երիտասարդության որոշակի խավ իրեն նախապատրաստում է անպայման ղեկավար դառնալու, անկախ այն բանից ինքն արժանի է դրան, թե ոչ։ Ընդ որում, ինչպես կոմերիտմիության, այնպես էլ կուսակցության մեջ կադրերի գնահատման չափանիշներից մեկը եղել և դեռ մնում է այն, թե ով է ամբիոնից ավելի գեղեցիկ, ավելի ճարտար ելույթ ունենում։ Եվ ահա կուսակցության վերին մարմինները պարբերաբար համալրվում են արդեն «պատրաստի» այդ կադրերով։

Վերջին 20—25 տարիներին Հայաստանի կոմունիստական կուսակցությունը իր շարքերը ներառեց կոմունիստական գաղափարների հետ ոչ մի առնչություն չունեցող մեծ թվով անարժան մարդկանց։ Կուսակցական տոմսը շատերին պետք եղավ պաշտոններ և տաքուկ տեղեր գրավելու համար։ Կուսակցության մեջ ընդունվելու մի տեսակ մարաթոն սկսվեց։ Բանն այնտեղ հասավ, որ կուսակցության մեջ սկսեցին ընդունվել նաև կաշառքով։ Այնտեղ խուժեցին խանութպաններ ու բենզինավաճառներ, պահեստապետներ ու մեծ ու փոքր կողոպտիչներ։ Նման խայտառակությունը երևի բացառիկ երևույթ է կուսակցությունների պատմության մեջ։

Եթե աղետի գոտում տնակներ բաշխելիս կամ Ադրբեջանից բռնագաղթված մեր հայրենակիցներին հողամասեր ու բնակարաններ տալիս կամ նույնիսկ գրանցելիս մութ գործարքներ են կատարվում, ապա մի՞թե կարող է խոսք լինել ժողովրդի մեջ հարգանք ունենալու մասին։

Իհարկե, Հայաստանի կոմկուսի անդամների զգալի մասը, անկասկած, համոզմունքներով է դարձել կուսակցության անդամ։ Նրանք բանվորներ, կոլտնտեսականներ, ծառայողներ են, իրենց ապրուստը դժվարությամբ, ազնիվ ճանապարհով հայթայթող մարդիկ։ Բայց այստեղ էլ խնդիր կա։ Բանն այն է, որ ձեռնարկությունների զգալի մասում բանվորական կորիզը կազմված է պրոֆտեխուսումնարանների շրջանավարտներից։ Իսկ ուսումնական այդ հաստատություններ հիմնականում սովորելու են գնում նրանք, ովքեր ուսման ցածր առաջադիմություն ունենալու պատճառով թողել են հանրակրթական դպրոցները։ Եվ ահա գործարաններից կուսակցության շարքեր են գալիս մեծ թվով մարդիկ, որոնք իրենց մտավոր կարողություններով չեն համապատասխանում արդի այն բարդ խնդիրներին, որոնք առաջադրում է կյանքը։

Եվ այսօր տարօրինակ վիճակ է ստեղծվել։ Հայ ժողովրդի մեջ կա հսկայական մտավոր պոտենցիալ, բայց կուսակցությունը հնարավորություն չունի օգտագործելու։ Ինչու՞։ Որովհետև կազմակերպությունը դարձել է կորպորատիվ։ Կադրերի բնական ընտրության համար համարյա փակ են ուղիները։ Որքան էլ տարօրինակ է, սրանից 30—40 տարի առաջ կուսակցության մեջ ղեկավար կադրերի ընտրությունը համեմատաբար ավելի ճիշտ ու արդարացի էր կատարվում, քան այժմ։ Այն ժամանակ կադրերի մի մասը գոնե աճում էր ժողովրդի աչքի առջև և ժողովրդի աչքի առջև էլ կատարվում էր նրանց ընտրությունն ու տեղաբաշխումը։ Հիմա ամեն ինչ կենտրոնացված է կուսակցական կոմիտեներում և դրանց բյուրոներում։ Հանրապետությունում մեկ-երկու մարդու ցանկությունից է կախված այս կամ այն պաշտոնին նշանակելը։ Իսկ եթե կադրերի բնական ընտրություն լինի, ապա, ինչ խոսք, հրապարակ կգան առավել արժանավորները։

Այս պայմաններում ո՞րն է հատկապես զավեշտականը։ Ասենք դա զավեշտ չէ, այլ օրինաչափություն. ներկայումս կուսակցական սկզբունքների և նրա գաղափարական անաղարտության պահպանման մասին հիստերիկ կոչերով հանդես են գալիս ամենից առաջ կուսակցության ղեկավար կորպուսի առավել անարժան մարդիկ, նրանք, ովքեր դրա բարոյական իրավունքը վաղուց են կորցրել, նրանք, ովքեր անաղարտության կամ հավատարմության մասին ճառելով կամ կարգախոսներ հռչակելով, կարծում են, թե հետ կբերեն իրենց համար երանելի ժամանակները, երբ արտաբերած խոսքը ոչ մի առարկության չէր հանդիպում։ Այդպիսի մարդիկ, անդադար հոլովելով ու շահարկելով կոմունիստական գաղափարայնությունը, գործը այնպես ներկայացնելով, թե իրոք շատ մտահոգ են դրա անաղարտության պահպանմամբ, իրականում այն օգտագործում են իբրև դիմակ, որի տակ թաքցնում են իրենց իսկական դեմքը։ Գաղափարայնության մասին կուրծք ծեծողները, համոզված եմ, տարիներ շարունակ չեն բացում մարքս-լենինյան գաղափարախոսությունը ստեղծողների գրքերը։ ՀԿԿ Կենտկոմի կուսպատմության ինստիտուտը հրատարակել է Վ. Ի. Լենինի երկերի ժողովածուն՝ 55 հատորով, այժմ հրատարակում է Կ. Մարքսի և Ֆ. Էնգելսի երկերը՝ 50 հատորով։ Արդյոք շա՞տ է այն կուսակցական աշխատողների թիվը, որոնք գոնե ձեռքն են վերցրել այդ հատորներից գոնե մեկը։ Կասկածում եմ։ Բայց գաղափարախոսության մասին դեմագոգիկ կոչեր՝ որքան ուզեք։ Հենց այդպիսիներն են, որ պահանջում են կուսակցությունից հեռացնել նրանց, ովքեր փորձում են խախտել գոյություն ունեցող անտանելի վիճակը նրա ներսում, բարեփոխել այն, նրան դուրս բերել խոր ճգնաժամից և մեկուսացումից, տանել դեպի ժողովուրդը, ովքեր ընդվզում են կուսակցության ներսում գոյություն ունեցող բարքերի դեմ։ Բայց անկախ դրանից, այսօր հազարավոր մարդիկ կամավոր դուրս են գալիս կուսակցության շարքերից։ Բայց վատը հենց այն է, որ հիմնականում դուրս են գալիս ազնիվ ու պարկեշտ նախկին էնտուզիաստները և մինչև ուղն ու ծուծը գաղափարին նվիրված մարդիկ, որոնց հոգում ներկայումս խորտակվել է գաղափարը։ Պարզ է, որ կուսակցությունից կամավոր դուրս չեն գա նաև նրանք, ովքեր ոչ գաղափարական մղումով զանազան անպարկեշտ ճանապարհով են մտել նրա շարքերը և այնտեղ դեռ մնում են որոշակի ակնկալիքներով։

Բայց եթե կուսակցությունն ուզում է արմատապես վերափոխել ու պահպանել իր գոյությունը, ապա պետք է իր շարքերը մաքրի հենց նրանցից, ովքեր նրա միասնության և գաղափարական անաղարտության մասին կարգախոսների տակ իրե՛նց՝ կուսակցության անդամությամբ շարունակում են վարկաբեկել ԽՄԿԿ-ն։ Հենց նրանք պետք է թողնեն կուսակցությունը, որոնց մեղքով է նաև, որ երկիրը հայտնվել է խոր ճգնաժամի մեջ։

Ինչպես ԽՄԿԿ-ն ամբողջությամբ վերցրած, այնպես էլ Հայաստանի կոմկուսը պետք է ինքնազտման անցնի։ Մեր հանրապետությունում, իմ կարծիքով, կոմկուսի անդամների թիվը չպետք է անցնի 40—50 հազարից։ Բայց կարևորը ոչ այնքան դա է, որքան Հայկոմկուսի անդամների քաղաքական դիրքորոշման ճշտումը. առաջնությունը որի՞ն տալ՝ ազգայի՞ն գա-

ղափարի՞ն, թե՞ վերացական ուրիշ գաղափարների։ Պետք է ընդմիշտ ըմբռնել, որ ժողովրդի հոգում խորթ, նրա ձգտումներին անհարիր բոլոր «իզմերը», անցողակի լինելով, վաղ թե ուշ դառնում են ժամանակավրեպ, որ մնայունը և հարատևը ազգային արժեքներն են։ Ֆրանսիայի կոմկուսի գլխավոր հոգսը ֆրանսիական ժողովուրդն է, Արգենտինայի կոմկուսինը՝ արգենտինական ժողովուրդը։ Հայաստանի կոմկուսի առաքելությունը նույնպես իր ժողովրդին ծառայելն է։

Կուսակցությունները ինքնանպատակ չեն, դրանք հրապարակ են գալիս, որպեսզի ծառայեն ժողովրդին, բավարարություն տան նրա կարիքներին և հոգեկան ձգտումներին։ Ուրեմն՝ ոչ թե ժողովուրդն է կուսակցության համար, այլ կուսակցությունը՝ ժողովրդի։ Հետևապես, եթե այս կամ այն կուսակցությունը ի վիճակի չէ այլևս ծառայելու ժողովրդին, ապա այն պետք է հեռանա՝ հրապարակը թողնելով քաղաքական ուրիշ ուժերի կամ պետք է արմատապես վերակառուցվի ու բարեփոխվի, հարմարվի ժամանակի ոգուն ու պահանջներին։

Ի՞նչ է հետևում այս ամենից։ Որո՞նք են, իմ կարծիքով, կադրային հարցում անելիքները։

Կուսակցությունը պիտի հրաժարվի պաշտոնների նկատմամբ մենաշնորհից. պաշտոն ստանալը չպետք է պայմանավորվի կուսակցական պատկանելությամբ։ Պետք է վերացվի նոմենկլատուրա կոչվածը։ Կուսակցության անդամ լինելը ոչ թե առանձնաշնորհումների ճանապարհ պետք է բացի, երաշխավորի առավելություն անկուսակցականների նկատմամբ, այլ պետք է մեծ հոգս ու պարտականություն լինի կոմունիստի համար։

Հարկ է հրապարակ բերել ազգի բոլոր ընդունակ ու շնորհալի, գիտակից ու խելացի ուժերը, զորահավաքի ենթարկել մտավոր ողջ պոտենցիալը՝ անկախ կուսակցական պատկանելությունից և քաղաքական-գաղափարական հայացքներից։

Հրապարակը պետք է թողնել ոչ թե ճարպիկներին ու կարիերիստներին, այլ ազգային ցավերով տառապող, համեստ ու պարկեշտ, մտածող ու ստեղծագործ մարդկանց՝ և՛ կոմունիստների, և՛ ոչ կոմունիստների։ Մեր ազգային հոգսերի լուծը պետք է քաշեն բոլորը։ Պետք է կարողանալ որքան հնարավոր է արագ հաղթահարել անհանդուրժողականությունը այլախոհների, այլ կերպ մտածող մարդկանց հանդեպ։

Մինչև ԽՄԿԿ XXVIII համագումարը կադրային լուրջ փոփոխություններ կատարել կուսակցական ողջ ապարատում և խորհրդային մարմինների ղեկավար կազմում։ Ավելի համարձակ ղեկավար աշխատանքի առաջ քաշել երիտասարդությանը. չափանիշը պետք է լինեն գիտելիքները, կազմակերպչական ունակությունները, բարոյական կերպարը և հատկապես քաղաքացիական դիրքորոշումը, որի իմաստը հարազատ ժողովրդի շահերին անմնացորդ նվիրվածությունն է։

Հ. ՍԻՄՈՆՅԱՆ
ՀԽՍՀ ԳԱ թղթակից անդամ

---

# ՍԵՓԱԿԱՆՈՒԹՅԱՆ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ԱՍՊԵԿՏԸ

## Ս. ԿԱՐԱՊԵՏՅԱՆ

ՍՈՑԻԱԼԻԶՄԻ ՏՆՏԵՍԱԳԻՏԱԿԱՆ ՏԵՍՈՒԹՅԱՆ արմատական շատ պրոբլեմներ գիտական խոր մշակման կարիք ունեն: Դրանով մեծապես պայմանավորված է սոցիալիզմի երկրներում ներկայումս տեղի ունեցող տնտեսական ռեֆորմների ճակատագիրը: Քաղաքատնտեսագիտական որոշ հարցերի պատասխանները որոնելիս մենք ուշադրությունը բևեռում ենք տնտեսագիտական նոր մտածողության ձևավորման՝ կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ պլատֆորմի տնտեսական ծրագրի հաջող և արդյունավետ իրականացման նախադրյալի ու պայմանի վրա: Եվ դա պետք է կենսագործել հասարակության հիմքի՝ արտադրության միջոցների և սպառման առարկաների սեփականության մասին պատկերացումների արմատական փոփոխման կոնտեքստում:

Կյանքը հաստատում է, որ վերակառուցումն այլընտրանք չունի: Բայց նրա ընթացքը բարդ է: Ոմանք արդեն հաստատապես դիրք են գրավել վերակառուցման ավանգարդում, ոմանք շարունակում են ականջի կողքով «բաց թողնել» նրա գաղափարները, իսկ ոմանք էլ, քողարկվելով սոցիալիզմի պաշտպանության լոզունգով, ձգտում են այն հանգեցնել դիմահարդարական բնույթի միջոցառումների՝ չփոխելով ոչ մի բան, թողնելով ամեն ինչ այնպես, ինչպես եղել է նախկինում: Նորացման ընթացակարգերը գաղափարախոսական և տեսական հուսալի ապահովման կարիք ունեն: Սակայն ժամանակակից տեսությունը չպետք է զբաղվի սոսկ այն բանի նկարագրությամբ, ինչն արդեն արվել է, և ինչ արդեն հայտնի է: Նա կոչված է առաջարկել այն հարցերի պատասխանների տարբերակները, որոնք ծագում են գործնականում և կարող են առաջանալ ապագայում: Մասնավորապես, անհրաժեշտ է, այսպես ասած, գլխովին սուզվել տնտեսագիտական տեսության խոհանոցը, ավելի խոր ուսումնասիրել այն ամենը, ինչով ապրում են աշխատավորները սոցիալիստական և կապիտալիստական երկրներում, թե ինչպես է ընթանում վերակառուցումն արտադրության ոլորտում, և թե նրա համար ինչպիսի միտումներ կանխորոշիչ կլինեն հետագայում:

Օրինակ, սոցիալիստական սեփականությունը, նրա իրացման ձևերին ու մեթոդներին առնչվող հարցերը չի կարելի լուծել այդ կատեգորիայի մասին հին պատկերացումների դիրքերից, հնացած մոտեցումների միջոցով: Ընդ որում, չպետք է մոռացվի նրա էությունը, որի շնորհիվ է, որ սոցիալիզմը սոցիալիզմ է դառնում: Աշխատավորական կոլեկտիվների կողմից սոցիալիստական սեփականությունը իրացնելու մի քանի ձև կա: Մեր կարծիքով, ամենաընդունելին այն է, երբ կոլեկտիվը հանդես է գալիս որպես սոցիալիստական սեփականության համատնօրեն: Այսինքն, երբ նա հասարակական պատվեր է կատարում իրեն հանձնված արտադրության հասարակական միջոցների օգնությամբ՝ միաժամանակ իրացնելով իր իսկ տնտեսական շահերը:

Այդ առնչությամբ կկամենայինք անդրադառնալ այն հարցին, որը վիճելի է համարվում: Դա ձեռնարկությունների հասարակական կառավարման պրոբլեմն է: Կառավարումը սեփականության անկապտելի հատկանիշն է, նրա անբաժան ֆունկցիան: Եթե աշխատավորական կոլեկտիվը հանդես է գալիս որպես սեփականության տեր, ապա կառավարման որոշ ֆունկցիաներ պետք է նրան հանձնել: Հարցն

ԿԱՐԱՊԵՏՅԱՆ ՍԵՐԳԵՅ ԱՐՄԵՆԱԿԻ— ԱԱՀ-ի կառավարման հայկական հանրապետական բարձրագույն դպրոցի տնտեսագիտական կրթության լաբորատորիայի վարիչ, դոցենտ:





այն է, թե կառավարման ֆունկցիաների հատկապես որ մասը պետք է մնա հասարակությանը: Մանավանդ որ սեփականության մասին պատկերացումը, ինչպես նաև սոցիալիզմի մասին պատկերացումը, ժամանակի ֆունկցիա է: Տվյալ դեպքում նկատի ունենք այն, որ չի կարելի տեսությունն ընդունել իբրև ինչ որ անփոփոխ, մեկընդմիշտ ձևակերպված դրույթների ամբողջություն:

Ինչ վերաբերում է սոցիալիստական սեփականության ձևերի բազմազանությանը, ապա մինչև հիմա դրանց նկատմամբ զուտ մեխանիկական մոտեցում է ցուցաբերվել: ԽՍՀՄ-ում սեփականության մասին խորհրդային օրենքը բացառում է այդպիսի մոտեցումը և հավաստում, որ ԽՍՀՄ-ում սեփականությունը հանդես է գալիս որպես խորհրդային քաղաքացիների կոլեկտիվ և պետական սեփականություն, իսկ պետությունը սեփականության բազմազան ձևերի զարգացման համար անհրաժեշտ պայմաններ է ստեղծում, ապահովում դրանց պաշտպանումը: Իսկ միութենական և ինքնավար հանրապետությունների օրենսդրական ակտերով կարող են սահմանվել սեփականության այլ, սույն օրենքով չնախատեսված ձևեր:

Ամբողջությամբ վերցրած սեփականության այդ բոլոր ձևերը տալիս են հարյուր տոկոս, և դրանցից մեկի տեսակարար կշիռը կարող է մեծանալ մյուսի նվազման հաշվին: Բայց պրոբլեմի այս թվաբանական լուծումը չի բացահայտում ընթացակարգի ողջ բարդությունը: Նախ, սեփականության ձևերը իրարից չեն բաժանված անհաղթահարելի անջրպետներով: Ուստի և գոյանում են տնտեսական հարաբերությունների երկրորդային, ածանցյալ, հաճախ խառը ձևեր, որոնք նույնպես նախատեսված են օրենքով: Այս հիմնադրույթները պետք է արտացոլվեն նաև ԽՄԿԿ «Դեպի հումանիստական, դեմոկրատական սոցիալիզմ» պլատֆորմում, որի նախագծում, մասնավորապես, ասվում է, որ տնտեսական ռեֆորմն աներևակայելի է առանց սեփականության հարաբերությունների խոր վերակառուցման: «ԽՄԿԿ-ն կողմնակից է սեփականության բազմազան ձևերի: Դրանց իրավահավասար, առողջ մրցակցությունը քաղաքացիների ազատության, աշխատողի կողմից ընդունակությունների կիրառման ձևերի ու եղանակների ռեալ ընտրության, սպառողի շահերի և իրավունքների երաշխիքի տնտեսական հիմքն է»:

Այսօր, երբ այնքա՜ն քաղաքականացվել է հասարակությունը, երբ քաղաքական ու տնտեսական ռեֆորմների հիման վրա տեղի են ունենում ապակենտրոնացման դինամիկական ընթացակարգեր, դրանք ուղեկցվում են կենտրոնախույս ուժերով, երբ զարգանում են հանրապետությունների, ինքնավար կազմավորումների, տեղական ինքնակառավարման մարմինների իրավունքների և սուվերենության ընդլայնման ու հագեցման ընթացակարգերը, ապա այդ ամենն, ընդհանուր առմամբ, միաժամանակ պահանջում է նաև այնպիսի հավասարակշռություն, որպեսզի սեփականության բազմազան ձևերով հանդես եկող հասարակության հիմքի գործունեությունը փոշեցրիվ չլինի դեպի առաջադիմական փոփոխություններ այդ օրգանիզմի միտվածության դեպքում:

Քննարկվող նախագծում լուծման ենթակա գլխավոր պրոբլեմն արտադրության միջոցներից աշխատողի օտարացման վերացումն է, նրան իր աշխատանքի արդյունքներին, իրոք, տնօրինող իսկական տնտեսատեր դարձնելը: Ինչպես հայտնի է, սեփականությունը, ըստ Մարքսի, նյութական բարիքների յուրացման ընթացակարգ է, դրանց՝ որպես իր իսկ բարիքների նկատմամբ ունեցած վերաբերմունք: Արտադրության հիմնական միջոցների հանրայնացումը երկար տարիներ դիտվում էր որպես խորհրդային հասարակության առավել կարևոր նվաճումը, քանի որ դրանց տերը ժողովուրդն էր համարվում: Սակայն ժամանակի ընթացքում պարզվեց, որ անմիջական արտադրողը փաստորեն բաժանված է արտադրության միջոցներից, որ նա դրանց վերաբերվում է որպես օտար միջոցների, ոչ թե որպես իրեն, այլ զուտ պետությանը պատկանող արժեքների:

Համաժողովրդական սեփականությունը հաճախ դիտվում էր ոչ ոքի չպատկանող, որն առաջացրել էր բացասական ոչ քիչ հետևանքներ՝ վնասաբեր էկոնոմիկա, հափշտակումներ, վատնում: Անհրաժեշտ է արտադրության միջոցներից աշխատողի օտարացումը վերացնել սեփականության որոշ ապապետականացման, դրա ձևերի բազմազանության ամրապնդման, անձնական սեփականությունը իրացնելիս քաղաքացուն ավելի լայն հնարավորություններ ընձեռելու, մասնավորապես, նրա այնպիսի նոր ձևերի օգտագործման միջոցով, ինչպիսիք են աշխատանքային, գյուղացիական և այլ տնտեսությունները: Սեփականության որոշ ապապետականացումը պետք է կատարել՝ այն տրոհելով համամիութենական սեփականության, հանրապետություն-



ների և ինքնավար կազմավորումների սեփականության, կոմունալ սեփականության, ինչպես նաև էկոնոմիկայի կենտրոնացված կառավարումը զգալիորեն թուլացնելու միջոցով:

ԽՍՀՄ Գերագույն խորհրդի 3-րդ նստաշրջանի ընդունած օրենքը թույլատրում է մեր երկրում կոլեկտիվ սեփականության այնպիսի ձևերի առկայությունը, ինչպիսիք են աշխատանքային կոլեկտիվների, ժողովրդական ձեռնարկությունների, կոոպերատիվների, տնտեսական ընկերակցությունների և միությունների, բաժնետիրական ընկերությունների, հասարակական կազմակերպությունների և քաղաքացիների այլ միավորումների սեփականությունը:

Ինչ վերաբերում է քաղաքացիների սեփականությանը, ապա բացի այնպիսի նոր իրավունքներից, ինչպիսին է, օրինակ, պետական, կոոպերատիվ կամ այլ բնակելի ֆոնդի բնակարանների գնումը որպես անձնական սեփականություն, օրենքում ամրացվում է նաև մեզ համար մի այնպիսի արտասովոր երևույթ, ինչպիսին է ոչ միայն իբրև անձնական սեփականություն սպառման առարկաներ, այլև արտադրության միջոցներ, այսինքն ոչ մեծ ձեռնարկություններ ունենալու հնարավորությունը, որտեղ կաշխատեին ընտանիքի անդամները:

Այսպիսով, սուբյեկտների համակարգում քաղաքացիների սեփականության իրավունքի առկայությունն ընդգծում է օրենքի գլխավոր միտքը և գաղափարը՝ սեփականության հարաբերությունների ողջ համակարգը պետք է ծառայի մարդկանց շահերին: Երկրորդ, քաղաքացիների սեփականությունն այսուհետև համարվում է սոցիալիստական սեփականություն, որովհետև ինչպես իր տնտեսական էությամբ, այնպես էլ իրավաբանական կարգի գործնական նկատառումներով այն ներառվում է սեփականության սոցիալիստական հարաբերությունների համակարգում և այդ իմաստով սեփականության բոլոր ձևերի հետ համանման պայմանների մեջ է դրվում:

Ի դեպ, սեփականության մասին օրենքում նախատեսված աշխատավորական և գյուղացիական տնտեսությունները մասնավոր սեփականություն կամ մասնավոր տնտեսություն չեն: Դա սոցիալիստական տնտեսավարման ձև է, քանի որ այն խարսխվում է հենց արտադրողների աշխատանքային գործունեության վրա, նրանում օգտագործվում է քաղաքացիների ընտանիքի անդամների, ինչպես նաև համատեղ աշխատավորական և գյուղացիական տնտեսություն վարող այլ անձանց աշխատանքը: Կարևոր է նաև այն, որ արտադրական նշանակության օբյեկտներն այստեղ պետք է օգտագործվեն տնտեսությունը ինքնուրույնաբար վարելու համար: Այլ կերպ ասած, ուրիշի աշխատանքի արգասիքների յուրացման հնարավորությունը բացառվում է:

Ահա թե ինչու ճգնաժամային իրավիճակից խորհրդային հասարակության դուրս գալը պետք է որոնել ոչ թե դեպի մասնավոր սեփականություն վերադառնալու, այլ սոցիալիստական սեփականության բազմազան ձևերի օգտագործման, պետական սեփականության ձերբազատման, անհատական աշխատանքի արդյունքների արդարացի գնահատման մեջ:

Այդ տեսակետից կարևոր նշանակություն կարող է ունենալ սեփականության նաև մի այնպիսի նոր ձևը, ինչպիսին է աշխատավորական կոլեկտիվի սեփականությունը, որը օրենքում նախատեսված է որպես ինքնուրույն, վարձակալական ձեռնարկությունից տարբերվող կոլեկտիվ սեփականության ձև: Տարբերությունն այն է, որ աշխատավորական կոլեկտիվի սեփականությունը պատկանում է անմիջաբար իրեն, մինչդեռ վարձակալության դեպքում ձեռնարկությունը որպես պետության սեփականություն է մնում այնքան ժամանակ, մինչև որ վարձակալների կոլեկտիվը գնի այն:

Աշխատավորական կոլեկտիվի սեփականության առաջացման և օգտագործման հնարավորության մասին խոսվում է նաև կուսակցության XXVIII համագումարի առթիվ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում: Դրա էությունն այն է, որ պետական ձեռնարկության ընդերքում ծագում, հասունանում և մեծանում է շահույթի այն բաժինը, որը գոյանում է ձեռնարկության տնտեսական գործունեության շնորհիվ, և որն աշխատավորական կոլեկտիվի սեփականության աղբյուրն է: Անընդհատ աճելով, այն դուրս է մղում պետական սեփականությանը, և ձեռնարկության ամբողջ գույքն աշխատավորական կոլեկտիվի սեփականությանն անցնելու դեպքում ծնվում են կոլեկտիվ սեփականության նաև նոր ձևեր՝ ժողովրդական ձեռնարկություն, կոոպերատիվ, տնտեսական ընկերակցություն կամ բաժնետիրական ընկերություն:

Ինչպես ասվում է քննարկվող փաստաթղթում, «Կուսակցությունը կողմնակից է առողջ հիմքի վրա կոոպերատիվ շարժման զարգացմանն ըստ ամենայնի աջակ-

# ՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ ԵՎ ԻՆՔՆԱՔՆՆԱԴԱՏՈՒԹՅՈՒՆԸ՝ ԱՌԱՋԸՆԹԱՑԻ ԿԱՐԵՎՈՐ ՊԱՅՄԱՆ

**Հ. ԱՌԱՔԵԼՅԱՆ**

Վ. Ի. ԼԵՆԻՆԸ ԲԱՑԱՌԻԿ ԿԱՐԵՎՈՐ ՆՇԱՆԱԿՈՒԹՅՈՒՆ Է ՏՎԵԼ քննադատության և ինքնաքննադատության զարգացմանը, նշում էր, որ չպետք է վախենալ քննադատությունից, այլ պիտի կարողանալ բացահայտել թերությունները՝ դրանք արագ և արմատապես վերացնելու համար: «Գործողությունների միասնություն, քննարկման և քննադատության ազատություն,— ահա մեր սահմանումը»,— գրել է նա (ԵԼԺ, հ. 14, էջ 156—157):

Լուծվող խնդիրների մասշտաբների և բարդության անի համեմատ այսօր բոլոր գործերի ընկատմամբ խիստ, քննադատական մոտեցումը առանձնահատուկ կարևորություն է ստանում: ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում հավուր պատշաճի բացահայտված են բոլոր այն թերությունները ու դրանց պատճառները, որոնք ինչ-որ չափով հանգեցրել են կուսակցության հեղինակության խաթարմանը, նշված են կուսակցական կյանքում սկզբնական կուսկազմակերպությունների և ղեկավար մարմինների հարաբերությունների ձևախախտումը, կուսակցության քաղաքականության մշակումից կոմունիստների սահմանազատումը, գերկենտրոնացումը, ազատ մտքի ճնշումը, բռնացումները, գաղափարական և բարոյական վերասերման փաստերը:

Քննադատության և ինքնաքննադատության զարգացման հարցը այժմ առավել շատ է կարևորվում: Պետք է ըստ ամենայնի արժեքավորել մեր արածն ու չարածը, իմաստավորել ուսանելին ու լավը, դասեր քաղել բացթողումներից և թերություններից: Այս ամենը, անտարակույս, պետք է կատարել կուսակցական սկզբունքայնությամբ ու օբյեկտիվությամբ, առողջ քննադատության ու ինքնաքննադատության մթնոլորտում: Եվ, բնականաբար, ՀԿԿ Սիսիանի շրջկոմը, սկզբնական կուսկազմակերպությունները ձգտում են առավել խելացիորեն օգտագործել թե՛ քննադատության և թե՛ ինքնաքննադատության հնարավորությունները, քանի որ գործարար և սկզբունքային հարցադրումները ոչ միայն օգնում են տեսնելու թերությունները, այլև բացահայտելու դրանց ծնող պատճառները, ժամանակին առաջ քաշելու և լուծելու սոցիալ-տնտեսական այն կարևոր խնդիրները, որոնք ծառանում են կոլեկտիվների առջև:

Քննադատության և ինքնաքննադատության ծավալման կարևոր միջոց են կուսակցական ժողովները: Կար ժամանակ, երբ դրանք նախապատրաստվում էին հապճեպորեն, առանց քննարկվող հարցերի խոր և համակողմանի ուսումնասիրման: Ընդ որում, յուրաքանչյուր ժողովի օրակարգում դրվում էին երկու, նույնիսկ երեք-չորս արմատական հարցեր, որոնց առթիվ գերազանցապես միաձայն ընդունված թերի որոշումները, սակայն, էական դրական ազդեցություն չէին թողնում գործերի վիճակի վրա: Նման փաստեր նկատվել են Շաքիի, Անգեղակոթի, Շաղաթի կոլտնտեսությունների և մի շարք այլ կուսկազմակերպություններում: Այժմ նրանք քննարկում են մեկ արմատական հարց, այն էլ բավարար չափով ուսումնասիրելուց հետո միայն: Ի դեպ, ժողովները հիմնականում հրավիրվում են դռնբաց, որով հնարավորություն է ստեղծվում, որպեսզի անկուսակցականները ևս կարողանան հայտնել իրենց կարծիքը քննարկվող այս կամ այն հարցի կապակցությամբ:

Քննարկվող հարցերի թվաքանակի կրճատմամբ հնարավոր է դարձել ավելի շատ զբաղվել որոշումների կատարման կազմակերպմամբ և ստուգմամբ: Այս առումով կարելի է նշել տրիկոտաժի ֆաբրիկայի կուսկազմակերպության դրական օրինակը: Քննադատության և ինքնաքննադատության խելացի օգտագործման, կուսակցական ժողովների դերի բարձրացման, որոշումների կատարման ճիշտ կազմակերպման շնորհիվ ֆաբրիկան սոցիալական և տնտեսական ոլորտում բավականին հաջողություններ է ձեռք բերել: Նախորդ տարվա համեմատությամբ զգալիորեն աճել է ապրանքային արտադրանքը, բարձրացել աշխատանքի արտադրողականությունը, պայմանագրային պարտավորությունները կատարվել են 100 տոկոսով: Այստեղ աշխատողների ամսական միջին աշխատավարձն ավելացել է 46,8 տոկոսով և հասել 251 ռուբլու:

Վերը սավածից հանգում ենք այն հետևության, որ հարկավոր է քննադատությունն ու ինքնաքննադատությունը առաջին հերթին ծավալել ու զարգացնել կուսակցության ստորին օղակում՝ սկզբնական կուսկազմակերպություններում, որը անմիջականորեն գործում է կոլեկտիվների խորքում և քաջատեղյակ է աշխատավորների հոգսերին ու պրոբլեմներին: Դա այժմ է՛լ ավելի է կարևորվում, քանի որ, ինչպես նշվում է ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում, կուսակցական զանգվածների դերի բարձրացման առնչությամբ առաջին պլան է մղվում կուսակցության հիմքը հանդիսացող սկզբնական կազմակերպությունների իրավունքների ընդլայնումը: Պլատֆորմի նախագծով նրանց է վերապահվելու կուսակցական շինարարության արմատական շատ հարցերի լուծումը: Հետևաբար, նման պայմաններում քննադատության և ինքնաքննադատության լայն ծավալումը կդառնան բազմակարծության արտահայտման, թերությունների օբյեկտիվ բացահայտման ու վերացման, վերակառուցման խնդիրների լուծման վճռական միջոց:

Կուսակցության հեղինակության վերականգնման կապակցությամբ կարևորվում է նաև նրա շրջանային օղակի դերի բարձրացումը: Ինչպես նշվում է պլատֆորմի նախագծում, նա է սկզբնական կուսկազմակերպությունների անմիջական օգնականը նրանց ամենօրյա աշխատանքում, քանի որ մոտ է կանգնած մարդկանց՝ կոմունիստներին և անկուսակցականներին: Այստեղից էլ՝ կուսշրջկոմի աշխատանքի ոճի կատարելագործման, նրա գործունեության մեջ քննադատության ու ինքնաքննադատության զարգացման ու լայն ծավալման անհրաժեշտությունը: Այդ ամենը սերտորեն առնչվում է և՛ շրջկոմի առջև ծառացած առօրյա խնդիրների լուծման, և՛ բյուրոյում հարցերի քննարկումների հետ: Նախկինում, օրինակ, տարեկան ընդունվում էին բազմաթիվ որոշումներ, որոնք ցանկալի արդյունքը չէին տալիս: Այժմ ընդունվում են անհամեմատ քիչ որոշումներ, և հնարավոր է լինում ավելի խորությամբ ուսումնասիրել գործերի վիճակը և սկզբունքային ու օբյեկտիվ քննադատական մոտեցում դրսևորել ինչպես հարցի քննարկման, այնպես էլ որոշում ընդունելու ժամանակ: Եվ մյուս կողմից՝ շրջկոմի ապարատի աշխատողները ավելի շատ ժամանակ կորցնում էին հարցերի նախապատրաստման, քան ընդունված որոշման կատարման կազմակերպման վրա: Մինչդեռ աշխատանքը պետք է սկսվի հենց երկրորդ փուլում, որոշումը կատարողներին ուղարկելուց հետո: Մենք ստիպված էինք այս բանի համար շրջկոմի բյուրոյում նախազգուշացնել մեր բաժինների վարիչներին:

Քննարկումների արդյունավետությունը բարձրացնելու նպատակով մենք ապահովում ենք ներկայացվող զեկուցագրերի օբյեկտիվությունը, սրությունը, քննադատության որոշակիությունը: Անհասցե քննադատությունը գործին օգնել չի կարող: Այն ճիշտ հասցեատերերին ուղղելուց բացի, կիրառում ենք կոմունիստների ակտիվությունը բարձրացնելու այլ ձևեր ևս: Կոմունիստները դառնում են առավել ակտիվ, երբ իրենց խոսքը տեղ է հասնում: Դրա համար նրանց քննադատական դիտողություններն ու առաջարկությունները գրանցվում են հատուկ գրքում, շրջկոմի բաժիններում ի մի բերվում և կոնկրետ ժամկետներով ուղարկվում կատարողներին:

---

*ԱՌԱՔԵԼՅԱՆ ՀԵՆԶԵԼ ՄԻՍԱՔԻ— ՀԿԿ Սիսիանի շրջկոմի առաջին քարտուղար։*

Կոմունիստների աճող ակտիվության մասին է վկայում այն փաստը, որ եթե նախկինում յուրաքանչյուր կուսակցական ժողովում հանդես էր գալիս 3—4 մարդ, ապա այժմ այդ թիվն անհամեմատ մեծացել է: Այս առումով կարելի է նշել Բռնակոթի, Սպանդարյանի կոլտնտեսությունների, քաղաքի № 3 միջնակարգ դպրոցի, քաղխորհրդի և այլ սկզբնական կուսկազմակերպությունների դրական օրինակը:

Քննադատության արժեքը նրա հասարակական նշանակության մեջ է: Տարիներ առաջ կուսկազմակերպություններում քննարկվում էին հիմնականում տնտեսական բնույթի հարցեր: Դա, իհարկե, նույնպես կարևոր է ու անհրաժեշտ: Շատ ելույթ ունեցողներ բարձրացնում են նաև սոցիալական զարգացմանն առնչվող այնպիսի պրոբլեմներ, որոնց զգալի մասը կրում է ոչ թե անձնական բնույթ, այլ ունի հասարակական հնչողություն: Մի շարք կազմակերպություններում հաճախակի արծարծվում էին ու հիմա էլ արծարծվում են բնակարանային շինարարության, խմելու ջրի, հեռախոսացման, ճանապարհաշինարարության, նախադպրոցական հիմնարկների ցանցի ընդլայնման, հացի որակի բարելավման, գյուղերի բարեկարգման և սոցիալական բնույթի այլ հարցեր:

Քիչ չի պատահել, որ ժողովներում ներկա գտնվող շրջկոմի ներկայացուցիչները (իսկ որպես կանոն շրջկոմի անդամները, անդամության թեկնածուները, շրջանային կուսկազմակերպության վերստուգիչ հանձնաժողովի անդամները, շրջկոմի ապարատի աշխատողները հաճախակի մասնակից են դարձվում կուսակցական ժողովներին) փոխել են ելույթների ուղղությունը՝ պատճառաբանելով, թե ժողովականների ուշադրությունը քննարկվող հարցից շեղելու հարկ չկա: Մինչդեռ մարդկանց տնտեսական հարցերին զուգընթաց ոչ պակաս մտահոգել են նաև սոցիալական պրոբլեմները: Դա նկատվել է շատերի, չեմ թաքցնում, նաև իմ՝ որպես կուսակցական ապարատի պատասխանատու աշխատողի կողմից: Պատահական չէ, որ ինչպես ամենուր, այնպես էլ մեզ մոտ սոցիալական ոլորտի պրոբլեմները տարեցտարի կուտակվում էին, իսկ դրա համար մի շարք պատճառներ կային: Մի կողմից, հանրապետական մարմինները այդ բնագավառին պակաս ուշադրություն էին նվիրում, մյուս կողմից՝ ընդհանրապես սոցիալական ոլորտը երկրորդական պլան էր մղվում, չէր ստեղծվում ընդհանուր մթնոլորտ և այլն: Այս առումով մեր շրջանային կուսկազմակերպության համար նույնպես շրջադարձային նշանակություն ունեցավ ՀԿԿ Կենտկոմի 1988 թ. սեպտեմբերյան պլենումը, որն ուներ, իսկապես, սոցիալական ուղղվածություն և քննադատության ծավալման ուսանելի օրինակ էր: Բնականաբար, մեր շրջանի սկզբնական կուսկազմակերպությունների ժողովներում, պլենումի արդյունքները քննարկելիս, լուրջ քննադատություն էր ծավալվում սոցիալական հարցերի շուրջ, կոմունիստները հանդես էին գալիս խելացի առաջարկություններով ու դիտողություններով: Հաշվի առնելով նրանց, ինչպես նաև աշխատավորությանը հուզող պրոբլեմները՝ մշակվում ու գործողության մեջ էր դրվում սոցիալական նպատակային ծրագիր: Ըստ դրա մինչև 1990 թվականը բնակարանի համար հերթագրվածները (Սիսիան քաղաքում այն կազմում է 700 ընտանիք) բնակարանով պետք է ապահովվեն 1992 թվականին: Այդ նպատակով կոնկրետ միջոցներ են ձեռնարկվել: Ներկայումս միայն քաղաքում կառուցվում է 500 պետական և անհատական բնակելի տուն, ընդ որում, առաջին անգամ դրանց շինարարությունն իրականացվում է նաև տնտեսական ու կոոպերատիվ եղանակներով: Անցած տարվա վերջերին հեռախոսային կապից սկսեց օգտվել ևս ութ գյուղ: Դրանով իսկ ավարտվեց շրջանի հեռախոսիֆիկացումը: Ջրատարներ են անցկացվել Բռնակոթում, Գորայքում, Գեղվարդոտում: Առաջիկա երեք տարում կլուծվի բոլոր գյուղերի ջրամատակարարումը: Շահագործման է հանձնվել մշակույթի երեք տուն (Նորավան, Գորայք, Անգեղակոթ), մեկ դպրոց (Տոլորս): Եթե մեկ տարի առաջ նախադպրոցական հիմնարկներում 1.000 երեխայի հաշվով ունեինք 250 տեղ, որը հանրապետական միջինից կիսով չափ պակաս էր, ապա այժմ այդ թիվը հասել է 600-ի: Վատ վիճակում է գյուղերի գազիֆիկացումը: Փաստորեն 37 բնակավայրերից բնական գազ է ստացել միայն մեկը: Ըստ ծրագրերի եկող հնգամյակի տարիներին այդ պրոբլեմը նույնպես կլուծվի: Միայն 1990 թ. գազիֆիկացման աշխատանքներ կծավալվեն տասը գյուղերում: Առաջիկա երկու տարում կիրականացվի ճանապարհաշինության ծրագիրը: Մշակվել է նաև գյուղերի ասֆալտապատման ծրագիր և արդեն զգալի գործ է արվել: Այս տարի կասֆալտապատվեն ևս 6—7 գյուղերի փողոցներ: Արմատապես կարգավորվել է հացի որակի բարելավման հարցը և այլն:



Ասվածին ցանկանում եմ ավելացնել, որ մեր սոցիալական ծրագրերը հաջողությամբ կարող են իրականացվել, եթե հանրապետական մինիստրությունները, գերատեսչությունները ամբողջ երեսով շրջվեն դեպի լեռնային հեռավոր շրջաններ: Եթե բոլոր մինիստրություններն ու գերատեսչությունները շրջանի հոգսերի նկատմամբ ցուցաբերեն այնպիսի հոգատարություն, ինչպիսին դրսևորում են, օրինակ, ՀԽՍՀ մելիորացիայի և ջրային տնտեսության, կուլտուրայի, թեթև արդյունաբերության, կապի, բնակարանային-կոմունալ տնտեսության մինիստրությունները, գազիֆիկացիայի գլխավոր վարչությունը և այլն, ապա վիճակն ավելի լավ կարող է լինել:

Հատկապես այժմ լուծման կարոտ սոցիալական հսկայական պրոբլեմներ կան լքված բնակավայրերում, որոնց քանակը շրջանում հասնում է մեկ տասնյակի: Այդ գյուղերը վերաբնակեցվում են Ադրբեջանից բռնագաղթվածներով: Նրանք հիմնականում քաղաքաբնակներ են: Ուստի ձգտում ենք, որպեսզի դրանցում ստեղծվեն եթե ոչ քաղաքային, այլ գոնե մարդկանց ապրելու և աշխատելու տանելի պայմաններ:

Այսօր խնդիր է դրված սոցիալական ոլորտի նյութական միջոցների մի զգալի մասը ուղղել դեպի գյուղ: Դա մեզ համար շատ կարևոր է, քանի որ գյուղերի լավ վիճակից չէ, որ շրջանի ողջ բնակչության շուրջ 52 տոկոսը բնակվում է շրջկենտրոնում: Այդպես են մտածում նաև շատերը: Վերջերս Հացավանի պետական տնտեսության կուսկազմակերպության ժողովում կոոպերատոր, կոմունիստ Աշոտ Ղազարյանը ուղղակիորեն նշեց, որ արդեն ժամանակն է փոխելու վերաբերմունքը գյուղերի նկատմամբ: Քաղաքը՝ քաղաք, բայց գյուղն էլ իր պահանջներն ունի:

Շրջանում լայն արձագանք է գտել շրջկենտրոնում ապրող նախկին Ուզ գյուղի բնակիչների «Վերադարձ դեպի գյուղ» շարժումը: Առաջինը իրենց բնօրրանը գնացին 20 ուզցիներ, այնուհետև նրանց հետևեցին ուրիշները: Շրջկենտրոնից Լծեն է վերադարձել 14 ընտանիք, Բռունիս՝ 9, Բռնակոթ՝ 8, Երևանից շրջան՝ 12 ընտանիք: Բոլոր ցանկացողներին հողամասեր են հատկացվում տուն կառուցելու համար: Խանդավառությունը՝ խանդավառություն, բայց դա էլ իր սահմանն ունի: Մարդկանց գյուղ կարող են բերել առաջին հերթին նորմալ պայմանները:

Այսօր մեզ համար լուրջ խնդիր է պայքարը կաշառակերության ու դրամաշորթության, սպեկուլյացիայի և սոցիալական մյուս արատավոր երևույթների հնարավոր սողանցքները փակելու համար: Դրանց շուրջ ևս լուրջ քննադատություն է ծավալվում ինչպես կուսակցական ժողովներում, այնպես էլ կոլեկտիվներում: Մարդիկ պահանջում են վերացնել այդ չարիքները ծնող պատճառները հատկապես բնակարանային հարցերի լուծման, կադրերի ընտրության գործում: Քննադատության հիման վրա էլ բնակարանային հերթերի ցուցակները տպագրվել են «Որոտան» շրջանային թերթում, դեֆիցիտային ապրանքները տրվում են ցուցակներով և բաշխվում հենց կոլեկտիվներին, անցել ենք կադրերի ընտրության մրցութային մեթոդին և այլն. 1989 թվականին մի քանի թեկնածուների առաջադրման պայմաններում են ընտրվել վեց տնտեսությունների, մի շարք հիմնարկ-ձեռնարկությունների ղեկավարներ: Միայն ճանապարհների շինարարության և բանկշահագործման տեղամասերի պետերը կոլեկտիվների ժողովներում ընտրվել են ութական թեկնածուներից:

Քննադատությունը և ինքնաքննադատությունը կադրերի դաստիարակության փորձված մեթոդ են: Եվ մենք ամեն ինչ անում ենք, որպեսզի նրանք հաղթահարեն ինքնագոհության, ինքնահանգստացման տրամադրությունները, կարողանան քննադատաբար գնահատել իրենց գործունեությունը, ճիշտ ընկալեն քննադատության իմաստը: Այդ պատճառով դրան առնչվող հարցերը պարբերաբար քննարկում ենք շրջկոմի բյուրոյում, գործին օգնող առաջարկությունների հիման վրա ընդունում համապատասխան որոշում: Վերջերս, օրինակ, բյուրոյում քննարկեցինք Վաղուդիի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպությունում քննադատության և ինքնաքննադատության ծավալման վիճակը: Բացահայտեցինք մի շարք թերություններ: Սակայն ինչպես կոլվարչության նախագահ Գ. Ավագյանը, այնպես էլ կուսկազմակերպության քարտուղար Ա. Մարտիրոսյանը քննադատությունից դեռևս անհրաժեշտ եզրակացություններ չեն արել: Կարելի է կազմակերպական հետևություններ անել: Բայց այդ հարցում ևս չպետք է շտապել: Իսկապես, կան օբյեկտիվ դժվարություններ: Ժողովրդագրական տեղաշարժերից հետո գյուղը կիսով չափ դատարկվել է, նոր եկածները անասնապահությանը ինչպես հարկն է չեն հարմարվում և այլն: Վիճակից դուրս գալու համար հանձնարարություններ են ստացել շըր-

ջանային մարմինները՝ շրջխորհրդի գործկոմը, ԾԱԱՄ-ի խորհուրդը և այլն: Եվ հույս ունենք, որ համատեղ ջանքերով տնտեսությունը դուրս կբերվի նման վիճակից:

Մեզ համար գործունեության ուղեցույց է այն ելակետային դրույթը, որ կուսակցության մեջ չկան և չպետք է լինեն վերահսկողությունից դուրս, քննադատության առաջ փակ կազմակերպություններ, չկան և չպետք է լինեն կուսակցական պատասխանատվությունից պատնեշված ղեկավարներ: Չեմ թաքցնի, մեզ մոտ կան առանձին կադրեր, որոնք հիվանդագին են ընդունում իրենց հասցեին արված քննադատությունը, կան և այնպիսիները, որոնք արտաքնապես ընդունում են այն, սակայն գործնական միջոցներ չեն ձեռնարկում թերությունները շտկելու համար: Այս առումով քննադատական խոսք պետք է ասել Նորավանի պետտնտեսության դիրեկտոր Ա. Զաքարյանի, Դաստակերտի բժշկական տեխնիկայի գործարանի դիրեկտոր Վ. Ամիրջանյանի, տոհմային կայանի պետ Գ. Մարտիրոսյանի, «Ավտոտեխսպասարկում» միավորման դիրեկտոր Ժ. Ամիրջանյանի, շինտեղամասի պետ Բ. Խաչատրյանի, Որոտանի կոլտնտեսության նախագահ Ս. Ամիրխանյանի և ուրիշ ընկերների հասցեին: Վերջինս, օրինակ, աշխատանքում կատարած սխալների համար ենթարկվեց կուսակցական պատասխանատվության, իսկ կոլտնտեսականները իրենց ժողովում նրա փոխարեն վարչության նոր նախագահ ընտրեցին շրջկոմի հրահանգիչ Վարդան Վարդանյանին:

Կան նաև դժգոհությունների միջոցով արտահայտվող այնպիսի իրավացի քննադատական դիտողություններ, որոնց լուծումը դուրս է գալիս շրջանային օղակների իրավասությունից և, ոչ օբյեկտիվ ընթացք ստանալու պատճառով, մթնոլորտն ավելի է շիկանում: Խոսքը վերաբերում է արցախյան պրոբլեմի արդարացի լուծման նկատմամբ ցուցաբերվող քաշքշուկին, Ադրբեջանի կողմից մեր հանրապետության և Արցախի շրջափակմանը, որի պատճառած վնասը միայն մեր շրջանում կազմում է յոթ միլիոն ռուբլի, սահմանային անընդհատ կրկնվող ավազակային հարձակումներին և այլն: Մենք սպասում ենք այդ հարցերի անկողմնակալ գնահատականին:

Վերակառուցման ներկա փուլում անչափ կարևորում ենք տեղական խորհուրդների նստաշրջանների, կոլեկտիվների ժողովների դերի բարձրացումը: Գաղտնիք չէ, որ մի շարք տեղական խորհուրդների նստաշրջաններ, գործկոմի նիստեր անցնում են տաղտկալի, միօրինակ, քիչ ներգործություն են ունենում գործերի վիճակի վրա: Նրանցում, ինչպես հարկն է, չեն ծավալվում քննադատությունն ու ինքնաքննադատությունը, անհրաժեշտ ուշադրություն չի նվիրվում ընդունված որոշումների և ընտրողների պատվիրանների իրականացմանը: Մասնավորապես պասիվ են գործում Բարձրավանի, Վաղուդիի, Աղուդիի, Ախլաթյանի և այլ գյուղական խորհուրդների գործկոմները: Գյուղերում կուտակված սոցիալական պրոբլեմները նաև տեղական խորհուրդների անբավարար գործունեության հետևանք են: Դրանց լուծման խնդրում ակտիվություն չեն դրսևորում դեպուտատները և մշտական հանձնաժողովները: Տեղական խորհուրդների առաջիկա ընտրությունները պետք է օգտագործվեն դրանք առավել ակտիվ, գործունյա դեպուտատներով համալրելու համար: Միաժամանակ գործին վնասում են նաև տեղական խորհուրդների նյութական սուղ հնարավորությունները: Ի՞նչ կարող է անել, օրինակ, մի տեղական խորհրդի գործկոմ, որը չունի տրանսպորտային ու անհրաժեշտ նյութական միջոցներ, իսկ տարվա բյուջեն չի անցնում 40—50 հազար ռուբլուց:

Տարիներ առաջ, մեկ տնտեսության մեջ մի քանի գյուղերի վերամիավորման հետ մեկտեղ, կրճատվեցին նաև տեղական խորհուրդները: Կրճատվեցին, ու գյուղերը մնացին անտեր: Եվ դա դարձավ նաև շատ բնակավայրերի քայքայման պատճառ: Ներկայումս շրջանն ունի 37 բնակավայր, մինչդեռ՝ 18 տեղական խորհուրդ: Եվ յուրաքանչյուր բնակավայրում իշխանության տեղական մարմին ունենալու անհրաժեշտությունը խիստ հասունացել է:

Այսօր քննադատության ծավալման գործում մեծացել են նաև կոլեկտիվների ժողովների հնարավորությունները: Դրանցում մարդիկ ազատորեն հանդես են գալիս քննադատական դիտողություններով ու առաջարկություններով, հայտնում իրենց կարծիքը: Արմատավորվել է նաև աշխատանքի հետևյալ պրակտիկան. ամեն տարվա արդյունքներով կոլեկտիվների ժողովներում լսվում են տնտեսական ղեկավարների հաշվետվությունները: Նրանք յուրահատուկ հաղորդում են տալիս իրենց գործունեության մասին: Այս ժողովականները գնահատում են ղեկավարների



աշխատանքը: Սակայն մենք ձգտում ենք, որ ձեռնարկության և տնտեսության գործերի համար պատասխանատվություն կրի ոչ միայն ղեկավարը, այլև ողջ կոլեկտիվը: Ներկայումս սա շատ կարևոր է, քանի որ դեմոկրատիայի և հրապարակայնության անվան տակ շատ հաճախ ոմանք ավելի շատ խոսում են իրենց իրավունքների, քան պարտականությունների մասին: Եվ հետո. հիմա ուրիշին քննադատելը հեշտ է: Նույն քննադատողը պետք է նաև կարողանա տեսնել սեփական բացթողումներն ու թերությունները: Մարդկանց պատասխանատվությունը հիմա ահաբեկմամբ, վարչական սանկցիաներով դժվար է բարձրացնել: Մարդն ինքը պետք է կարողանա իրեն վերակառուցել: Միայն գիտակցական կարգապահությամբ է հնարավոր լուծել այսօրվա խոշորամասշտաբ խնդիրները:

Մեծ անելիքներ ունենք շրջանային թերթի քննադատական ոգու բարձրացման գործում: Նրանում չի երևում ֆելիետոնային ժանրը: Մյուս կողմից էլ՝ դեռևս թերթի ոչ բոլոր քննադատական դիտողություններն են արժանանում կուսակցական, խորհրդային և մյուս կազմակերպությունների ուշադրությանը: Հատկապես արմատապես չեն լուծվում հասարակական սննդի, առևտրի, սպասարկման մյուս ոլորտների վերաբերյալ քննադատական հրապարակումներում բարձրացված հարցերը: Դրանց մի մասը, որպես կանոն, քննարկվում են նաև շրջկոմի բյուրոյում, շրջխորհրդի գործկոմում: Նման հոդվածներից մեկի քննարկման ժամանակ շրջխորհրդի գործկոմի որոշմամբ, աշխատանքում տեղ գտած թերությունների ու բացթողումների համար, սանէպիդկայանի գլխավոր բժիշկ Է. Առաքելյանին հայտարարվեց նկատողություն:

Որպես ինքնաքննադատության զարգացման ձև օգտագործվում են կոմունիստների հաշվետվությունների քննարկումները կուսակցական ժողովներում և շրջկոմի բյուրոյում: Վերջին շրջանում բյուրոն լսել է շրջկոմի քարտուղար Ռ. Դանիելյանի, շրջխորհրդի գործկոմի նախագահի տեղակալ Դ. Աղայանի, շրջկոմի անդամ, «Նեյրոն» գործարանի դիրեկտոր Ա. Ստեփանյանի և ուրիշ կոմունիստների հաշվետվությունները:

Քննադատության ծավալման միջոց են նաև կոմունիստների հետ անհատական զրույցները: Դրանց ընթացքում բարձրացվում են կենսական նշանակության զանազան հարցեր, որոնք հետագայում լուծվում են համապատասխան մարմինների կողմից: Վերջերս, օրինակ, շրջկոմում գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, ԽՄԿԿ անդամ Սերոբ Դոլուխանյանը առաջ քաշեց շրջանում տնկարանային տնտեսություն ունենալու անհրաժեշտության հարցը: Գյուղատնտեսական մարմինները այդ առաջարկության կատարման համար ստացան համապատասխան հանձնարարականներ: Կամ գյուղատնտեսական գիտությունների թեկնածու, ԽՄԿԿ անդամ Վ. Պետրոսյանը առաջարկեց բաժանել Որոտանի կիրճում բնակլիմայական բարենպաստ պայմաններում գտնվող հողատարածությունները՝ ընկույզի, թզի, թթի և այլ պտղատու ծառերի տնկումներ կատարելու համար: Այդ առաջարկությունը նույնպես ընդունվել է և առաջիկայում հողահատվածը կբաժանվի ցանկացողներին:

Ներքևից եկող քննադատությունը արտահայտվում է աշխատավորների նամակների, դիմում-բողոքների, շրջկոմում կազմակերպվող ընդունելության միջոցով: Մարդկանց հոսքը շրջկոմ բավականին մեծացել է: Եթե 1988 թվականին մեզ մոտ ընդունելության էր եկել 270 քաղաքացի, ապա անցած տարի այդ թիվը եռապատկվել է: Ընդունելությունների ընթացքում են լուծվում են ոչ միայն անձնական, այլև ընդհանուրին մտահոգող շատ հարցեր: Հատկանշական է հետևյալ օրինակը: Ծրջկոմ էր եկել Ծամբի տերիտորիալ կուսկազմակերպության քարտուղար Լուսիկ Միրզոյանը: Նրա պահանջը որոշակի էր՝ գյուղում ընդլայնել հեռախոսային ցանցը, ասֆալտապատել այնտեղ տանող ճանապարհը, նորոգել ակումբը և այլն: Առաջադրված հարցերի կապակցությամբ կազմվեց միջոցառումների պլան և կարճ ժամանակամիջոցում այն իրականացվեց:

Ծատ հաճախ շրջկոմ ընդունելության են գալիս ոչ միայն առանձին քաղաքացիներ, այլև խմբեր: Մարդկանց մեզ մոտ է բերում այս կամ այն պրոբլեմը կամ հոգսը: Հատկանշական է հետևյալ օրինակը: Դաստակերտ ավանում տեղավորվել են Ադրբեջանից բռնագաղթված շուրջ 500 փախստականներ: Կարճ ժամանակամիջոցում այնտեղ լուծվել են դպրոցի, հիվանդանոցի, մանկապարտեզի, բնակարանների նորոգման, առևտրի կազմակերպման և մի շարք այլ հարցեր: Սակայն խնդիրներ էլ կան, որոնք լուծման են սպասում: Այդ առիթով շրջկոմ եկան 10 նորաբնակներ: Նրանց առաջարկությունների կապակցությամբ նույնպես մշակվեցին միջոցա-

ռումներ՝ կոնկրետ ժամկետներով: Շուտով կարգավորվեցին բնակելի տների ջեռուցումը, հացաթխումը, սպասարկման ոլորտի գործերը, անցկացվեց գիշերային լուսավորություն: Այս տարի կսկսվեն նաև շրջկենտրոն տանող ճանապարհի վերակառուցումն ու ասֆալտապատումը: Կազմվում են ավանի գազիֆիկացման նախագծերը: Ստացված դիմումներում, նամակներում, ընդունելության ժամանակ աշխատավորների բարձրացրած հարցերը հիմնականում լուծվում են տեղում: Դրա շնորհիվ խիստ նվազել է հանրապետական ղեկավար մարմիններին ուղարկվող դիմումների քանակը: Այսպես, անցած տարի եղել է ընդամենը 4—5 այդպիսի նամակ: Սակայն դեռևս քիչ չեն այն ղեկավարները, որոնք աշխատավորների դիմում-բողոքներին ժամանակին ընթացք չեն տալիս, ստեղծում են ավելորդ քաշքշուկ: Նրանցից ոմանք շրջկոմի բյուրոյում խիստ նախազգուշացվել են: Դրանից հետո միայն, օրինակ «Ագրոշին» № 6 տրեստի նախկին կառավարիչ Գ. Ավանեսյանը լուծեց Գորայք գյուղի բնակիչ, կոմունիստ Վ. Ասլանյանի շրջկոմ հասցեագրված նամակում արծարծված հարցերը:

Մարդկանց ակտիվության բարձրացմանը նպաստում է նաև շրջկոմում ստեղծված «հեռախոսային ընդունարանը»: Այդպիսի ընդունարաններ են գործում նաև շրջանային ու քաղաքային խորհուրդների գործկոմներում: Մենք գտնում ենք, որ ազգաբնակչության հետ երկխոսությունը պիտի կրի սիստեմատիկ բնույթ: Նման երկխոսությունները, որ վերջին շրջանում կազմակերպվել են Նորավան, Գորայք, Շամբ, Դարբաս գյուղերում, տրիկոտաժի ֆաբրիկայում, «Լույս» արտադրամիավորման թողարկիչ-կարգավորիչ սարքերի գործարանում և այլուր, բավականին օգտակար են: Նպատակին է ծառայել նաև կուսշրջկոմի բյուրոյի արտագնա նիստը Որոտան գյուղում: Գորայքի պետտնտեսությունում կազմակերպված հանդիպում-հաշվետվության ժամանակ կոլեկտիվի անդամները հանդես եկան քննադատական դիտողություններով: Դա օգնեց, որ կարճ ժամկետում գյուղում վերակառուցվի մշակույթի տունը, շահագործման հանձնվի գրասենյակի նոր շենքը, և, որ ամենակարևորն է, կառուցվի խմելու նոր ջրատարը:

Վերջերս կուսշրջկոմի բյուրոյում քննարկեցինք «Աշխատավորների նամակների, դիմում-բողոքների և գանգատների հետ տարվող աշխատանքում քաշքշուկի երևույթների հաղթահարման նպատակով շրջխորհրդի և քաղխորհրդի գործկոմների ծավալած գործունեության մասին» հարցը: Վերհանվեցին շրջանային և քաղաքային խորհուրդների գործկոմների աշխատանքի թերությունները: Արձանագրվեց, որ շատ հաճախ մարդիկ իրենց դիմում-բողոքների պատասխանները ստանում են ուշացումով, հոգատար վերաբերմունք չի ցուցաբերվում քաղաքացիների կարիքների և հոգսերի նկատմամբ: Եվ, իրոք, շրջկոմի փոստի վերլուծությունը ցույց է տալիս, որ ստացված դիմում-բողոքների, նամակների զգալի մասը ուղղված է իրենց տեղական խորհուրդների գործկոմներին: Շրջկոմի բյուրոյում խոսվեց նաև այն մասին, որ բոլոր հարցերը չեն, որ կարող են դրականորեն լուծվել, քանի որ երբեմն քաղաքացին դիմումում օբյեկտիվորեն չի ներկայացնում իր պահանջը կամ այն չի բխում գործող օրենքներից: Ուրեմն մարդուն պետք է համոզել համբերատար, մարդավարի, ընկերավարի: Նա պիտի շրջանային մարմիններից գոհ հեռանա նույնիսկ մերժվելու դեպքում: Չէ՞ որ այդ բոլոր օղակներն ստեղծվել, ղեկավարներն ընտրվել կամ նշանակվել են հենց մարդու համար, նրա իրավունքների պաշտպանության համար: ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում էլ խոսվում է նրա նկատմամբ հոգածության դրսևորման մասին, նշվում, որ կուսակցությունն իր գլխավոր նպատակը համարում է այն, որ մարդու համար ապահովվեն ապրելու և աշխատելու արժանավայել պայմաններ, սոցիալական արդարություն, քաղաքական ազատություն, անհատի համակողմանի զարգացման և հոգևոր ծաղկման հնարավորություններ:

Քննադատությունը և ինքնաքննադատությունը վերակառուցման առաջընթացի կարևոր պայման են, կուսակցության զարգացման օբյեկտիվ օրինաչափություն: Հետևաբար, կուսշրջկոմը այսուհետև նույնպես կնպաստի քննադատության և ինքնաքննադատության հետևողական, լայն ծավալմանը, իր բոլոր օղակներում դրանք կդարձնի կոմունիստների ակտիվության բարձրացման, աշխատանքում տեղ գտած թերությունների բացահայտման ու վերացման, վերակառուցման հաջողության ու առաջընթացի կարևոր պայման...

# ԱՎԵԼԻ ՇԱՏ ԳՈՐԾԱՐԱՐՈՒԹՅՈՒՆ

**Կ. ՍՈՂՈՄՈՆՅԱՆ**

ՎԵՐԱԿԱՌՈՒՑՈՒՄԸ ԹԱՓԱՆՑՈՒՄ Է մեր կյանքի բոլոր ոլորտները, ամենից առաջ վերափոխում մեր մտածելակերպն ու գործելակերպը: Սակայն, միաժամանակ, նրա ընթացքն ու զարգացումը դյուրին չեն, նրա ճանապարհին շատ են խոչընդոտներն ու դժվարությունները, որոնց հաղթահարման համար մեծ ջանքեր են պահանջվում: ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում տագնապով է խոսվում այն մասին, որ վերակառուցումը դանդաղ է ընթանում հենց կուսակցության մեջ, որ կուսակցական կյանքում ձևախախտվել են հարաբերությունները սկզբնական կուսկազմակերպությունների և ղեկավար մարմինների միջև, կոմունիստները սահմանազատվել են կուսակցության քաղաքականության ձևավորումից...

Չառարկելով կուսակցության մեջ ստեղծված աննպաստ կացության առթիվ պլատֆորմում արված հետևություններին՝ միաժամանակ պաշտպանում եմ նրանում արված այն հավաստումը, որ «այդուամենայնիվ կուսակցական լայն զանգվածներում պահպանվել են նվիրվածությունը լենինյան իդեալներին, անշահախնդրությունը, անձնվիրությունը ժողովրդին ծառայելու գործում»: Առանց տարակուսելու կարող եմ ասել, որ այս գնահատականը հավասարապես վերաբերում է նաև մեր՝ Արտաշատի շրջանի Վերին Արտաշատ գյուղի կոլտնտեսության սկզբնական կուսկազմակերպության անդամներին: Կուսկազմակերպությունը բնավ էլ չի զիջել իր ավանգարդային դիրքերը, կոմունիստները շարունակում են ակտիվություն ու նախաձեռնություն դրսևորել և՛ հանրային արտադրության ոլորտում, և՛ հասարակական-քաղաքական կյանքում:

Մեր կոլտնտեսությունը ինչպես շրջանի, այնպես էլ հանրապետության առաջավորներից է. ունի կայուն ցուցանիշներ, տարեցտարի ավելացնում է բուսաբուծական ու անասնապահական մթերքների արտադրությունը և դրանց վաճառքը պետությանը: Զգալի է նրա տեսակարար կշիռը շրջանի ընդհանուր արդյունքում. նրան բաժին է հասնում գյուղատնտեսական բոլոր մթերքների արտադրության ու մթերումների ծավալի 10—12 տոկոսը: Տնտեսության տարեկան դրամական եկամուտներն անցնում են 3,5 միլիոն, օգուտները՝ մեկ միլիոն ռուբլուց, շահութաբերության մակարդակը կազմում է մոտ 40 տոկոս, կոլտնտեսականների ամսական միջին աշխատավարձը՝ 370 ռուբլի:

Եվ կարող եմ ամենայն վստահությամբ ասել, որ կոլտնտեսության հաջողություններում մեծ ներդրում ունեն մեր կոմունիստները: Այժմ նրանց թիվը հասնում է 76-ի, որոնց գերակշռող մասն աշխատում է բուն նյութական բարիքների արտադրության ոլորտում: Նրանք այգեգործներ ու բանջարաբույծներ են, անասնապահներ ու մեխանիզատորներ, միջին օղակի ղեկավարներ, այլ խոսքով, տեղաբաշխված են բոլոր տեղամասերում և իրենց արժանի ներդրումն են անում հանրային արտադրության զարգացման գործում: Բազմաթիվ առաջավորներից նշեմ մեկ-երկուսին: Գրիշա Ավետիքյանը կուսանդամ է 1964 թվականից և արդեն 43 տարի է աշխատում է կոլտնտեսությունում: Ընդ որում, քառորդ դարից ավելի է, ինչ ղեկավարում է № 2 բրիգադը: Տարիներ շարունակ նրա կոլեկտիվը խաղողի և բանջարեղենի առատ բերք է հավաքում: Օրինակ, 1988 թ. ամեն մի հեկտարից խաղողի բերքատվությունը կազմեց 201, բանջարեղենինը՝ 642 ցենտներ, իսկ հաջորդ՝ եղանակային աննպաստ տարում, տնտեսության միջինից զգալիորեն ավելի շատ խաղող ստա-

*ՍՈՂՈՄՈՆՅԱՆ ԿԱՐՈ ՆԱՑԻԿԻ— Արտաշատի շրջանի Վ. Արտաշատ գյուղի կոլտնտեսության կուսբյուրոյի քարտուղար:*

որոնք խոչընդոտում են գյուղատնտեսական աշխատանքների ժամանակին կատարմանը: Արհկոմի նախագահ Ն. Սարգսյանը իր ելույթը նվիրեց նաև վարորդների շահերի պաշտպանությանը. խոսեց վառելանյութերի օգտագործման չափերի կապակցությամբ նրանց դժգոհության (բենզինի ծախսման նախատեսված նորման չի համապատասխանում տնտեսության դաշտային աշխատանքների պայմաններին) մասին:

Մեծ հետաքրքրություն առաջացրեց աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրման մասին գլխավոր տնտեսագետ Զորիկ Սահակյանի հաշվետվության քննարկումը: Կոլտնտեսության նախագահ Գ. Հարությունյանը, բրիգադավար Ս. Միխիթարյանը, արհկոմի նախագահ Ն. Սարգսյանը և ուրիշներ նշեցին, որ ներտնտեսային հաշվարկի և բրիգադային կապալի ներդրման ասպարեզում որոշ գործ է արվել. դաշտավարական բոլոր բրիգադներն ու երեք ֆերմաները անցել են աշխատանքի վարձատրման կապալային եղանակին: Դրան նախորդել է նախապատրաստական բազմակողմանի աշխատանք. բրիգադներում անցկացվել են խորհրդակցություններ, ընտրվել բրիգադի խորհրդի կազմ, աշխատանքի վարձատրության հաշվարկները կազմվել են՝ ելնելով համախառն եկամտից:

Ժողովականները բացահայտեցին նաև թերությունները, նշվեց, որ չնայած գյուղատնտեսական աշխատանքներն սկսվելուն, բրիգադային տնտհաշվարկային առաջադրանքները չեն կազմվել կապալի և ներտնտեսային հաշվարկի սկզբունքներին համապատասխան, տնտեսագետները ուշացնում են նյութական ծախսերի ու աշխատավարձի ֆոնդի կազմումը, ձգձգում պայմանագրերի կնքումը ֆերմաների ու բրիգադների կոլեկտիվների հետ: Ժողովը գլխավոր տնտեսագետ Զ. Սահակյանին հանձնարարեց կարճ ժամկետում ավարտել աշխատանքի կազմակերպման նոր ձևերի ներդրման պայմանագրերի մշակումը և ներկայացնել կոլտնտեսության վարչության քննարկմանը, բուսաբուծության և անասնապահության բնագավառների մասնագետների հետ միասին կազմել բոլոր նախահաշիվները, նախատեսել նյութական ու բարոյական խրախուսման անհրաժեշտ միջոցներ և այդ առթիվ բացատրական աշխատանք տանել կոլտնտեսականների շրջանում: Համապատասխան հանձնարարություններ ստացան նաև բրիգադավարներն ու ֆերմաների վարիչները, կոլտնտեսության վարչությունը:

Վերջերս կուսակցական ժողովին ԽՄԿԿ կանոնադրական պարտականությունների և իրեն վստահված տեղամասի գործերի վիճակի մասին հաշիվ տվեց դաշտավարական № 4 բրիգադի բրիգադավար Մայիս Թարվերդյանը: Մտքերի փոխանակության մասնակիցները հիմնականում հավանություն տվեցին նրա գործունեությանը: Սակայն ԽՄԿԿ անդամ, գլխավոր գյուղատնտես Ա. Մամիկոնյանը նշեց, որ Մ. Թարվերդյանն ունի նաև թերացումներ. դեռևս քիչ է մասնակցում գյուղի հասարակական աշխատանքներին, անցկացվող կուլտուր-մասսայական միջոցառումներին: Կուսակցական ժողովը այդ կապակցությամբ նրան տվեց կոնկրետ հանձնարարություններ, որոնք Մ. Թարվերդյանը կատարում է բարեխղճորեն:

Իրենց ավանգարդային դերի, կանոնադրական պարտականությունների կատարման և վստահված տեղամասերի գործերի վիճակի մասին հաշվետվությամբ հանդես են եկել նաև անվտանգության ինժեներ Է. Մարգարյանը, շարքային կոլտնտեսականներ Դ. Մարգարյանը, Մ. Բադալյանը, Ն. Մովսիսյանը, արհկոմի նախագահ Ն. Սարգսյանը, ԼԿԵՄ կոմիտեի քարտուղար Ս. Ասատրյանը, կոլտնտեսության վարչության նախագահ Գ. Հարությունյանը:

Եվ հատկանշական է, որ կոմունիստների հաշվետվությունների քննարկումներով կուսկազմակերպությունը, նրա բյուրոն էապես բարձրացնում են նրանց պատասխանատվությունը ԽՄԿԿ կանոնադրական պարտականությունների հետևողական կատարման համար, խթանում նրանց ակտիվությունը, նպաստում ստեղծագործական ուժերի ծավալմանն ու նախաձեռնության զարգացմանը և այդ ամենով հանդերձ՝ հանրային արտադրության խնդիրների լուծմանը:

Արդարությունը պահանջում է ասել, որ չնայած հազվադեպ, սակայն, այնուամենայնիվ, մեր կոմունիստներից ոմանք իրենց արարքներով արժանանում են կուսկազմակերպության կշտամբանքին ու պարսավանքին: Նման պայմաններում մենք ակտիվության ենք մղում կուսակցական տույժ ստացած կոմունիստներին: Նշեմ վերջին տարիներին պատահած մի եզակի փաստի մասին. 1986 թվականին էր, կանոնադրական պարտականությունների կատարման մեջ թերանալու և կոմունիստին ոչ վայել արարքի համար շարքային կոլտնտեսական Գրիգոր Ավագյանին հայտա-



րարվեց խիստ նկատողություն՝ գրանցելով հաշվառման քարտում: Նա չորրորդ բրիգադից տեղափոխվեց կաթնապրանքային ֆերմա՝ որպես անասնապահ: Կուսբյուրոն Գ. Ավագյանին տվեց մի շարք հանձնարարություններ, որոնք նա կատարեց ժամանակին ու բարեխղճորեն և չանցած մեկ տարի իրեն դրսևորեց դրական կողմերով. ակտիվորեն մասնակցում էր կուսկազմակերպության աշխատանքին, գյուղի հասարակական կյանքին, գործատեղում աչքի ընկնում ամուր կարգապահությամբ, պարտականությունները կատարում նվիրումով: Եվ կոմունիստները մեկուկես տարի առաջ միաձայն որոշեցին հանել նրա կուսակցական տույժը:

Մեր գործունեության նպատակն է ամենուրեք՝ արտադրության ու հասարակական կյանքի բոլոր ոլորտներում, ապահովել կոմունիստների ավանգարդային դերը: Այս հարցում մենք ելնում ենք ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծի այն դրույթից, որ «կուսակցական զանգվածների անմիջական դերի բարձրացումը ենթադրում է կուսակցության հիմքը հանդիսացող սկզբնական կազմակերպությունների իրավունքների ընդլայնում»: Դա այժմ հույժ կարևոր է, որովհետև, ինչպես ասվում է պլատֆորմի նախագծում, կոմունիստները հիմնավորված կերպով արտահայտվում են կուսակցական շինարարության արմատական հարցերում սկզբնական կուսկազմակերպությունների ինքնուրույնությունը բարձրացնելու օգտին: Այո՛, ես ևս գտնում եմ, որ կուսկազմակերպությունը, գործելով աշխատավորական զանգվածների շրջանում, ամենօրյա շփման մեջ մտնելով նրանց հետ, պետք է օգտվի լայն ինքնուրույնությունից, զերծ մնա վերադաս կուսակցական մարմինների անտեղի հովանավորչությունից, չկաշկանդվի տեղերում իրեն վերապահվող խնդիրները լուծելիս: Միայն ակտիվ, մարտունակ կազմակերպության անդամները կարող են մշտապես ապահովել իրենց ավանգարդային դերը, գտնվել կոմունիստի կոչման բարձրության վրա, իրոք, հավատարիմ մնալ լենինյան իդեալներին, դառնալ նորի ու առաջավորի պաշտպանն ու արմատավորման նախաձեռնողը:

ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում առանձնահատուկ կարևորություն է տրվում ագրարային հատվածի առաջնային զարգացմանը՝ հանուն մսի, կաթի, բանջարեղենի, հողագործական և անասնապահական մյուս մթերքների արտադրության աճի արագացման: Դա հնարավոր է ապահովել, եթե, նախագծի խոսքերով ասած, պարենային հիմնահարցի լուծման հիմքը դառնա հողի վրա տնտեսավարելու բոլոր ձևերի զարգացումը, կոնկրետ մեր տնտեսությունում լայնորեն արմատավորվեն տնտեսավարման ու աշխատանքի կազմակերպման այնպիսի եղանակները, ինչպիսիք են լրիվ տնտհաշվարկը, ինքնաֆինանսավորումը, կոլեկտիվ, ընտանեկան ու անհատական կապալը, հողի ու անասունների վարձակալումը: Դրանք գյուղատնտեսության բնագավառի աշխատողի մեջ արթնացնում են հողի նկատմամբ տիրոջ ու սրտացավության զգացում և, անտարակույս, հնարավորություն կընձեռեն առավելագույնս օգտագործելու արտադրության զարգացման անխտիր բոլոր ռեզերվներն ու հնարավորությունները: Հետևաբար, մեր կուսկազմակերպության կոմունիստների առաջնահերթ խնդիրն է՝ գործնականորեն մասնակցել առաջադիմական այդ պրոցեսների խորացմանը, երկրին այնքա՜ն հույժ անհրաժեշտ պարենամթերքների արտադրության ավելացմանը: Ոչ միայն մասնակցել, այլև գլխավորել այդ գործը, հատկապես որ մեր նվաճած բարձր բնագծերը դեռևս վերջին սահմանը չեն: Վերջերս մեզ մոտ քննարկեցինք հողը և ֆերմաները վարձակալության տալու հարցը: Դա լայն արձագանք գտավ կոլտնտեսականների, կոմունիստների շրջանում: Տարակույս չկա, որ աշխատանքի կազմակերպման այդ եղանակի կիրառմամբ հողից անհամեմատ շատ արդյունք կստացվի, էապես կավելանա նաև անասունների մթերատվությունը: Այստեղից էլ՝ դրամական եկամուտների և օգուտների նոր աճը, շահութաբերության բարձրացումը, դրանցով հանդերձ՝ ոչ միայն տնտեսական, այլև սոցիալական խնդիրների հաջող լուծումը:

Ի դեպ սոցիալական խնդիրների մասին: Գաղտնիք չէ՝ կոմունիստների (և ոչ միայն նրանց) ակտիվության բարձրացումը, արտադրությունում ավանգարդային դերը չեն ապահովվում հենց այնպես, միայն ոգևորությամբ ու նյութական խթանմամբ: Հարկավոր է հոգ տանել նաև նրանց հոգևոր պահանջմունքների բավարարման մասին: Մարդը, կոմունիստ լինի, թե անկուսակցական, ոչ միայն ուզում է լավ աշխատել, ճաշակով հագնվել ու կուշտ սնվել, այլև խելամտորեն տնօրինել իր ազատ ժամանակը, մարդավայել կազմակերպել հանգիստն ու կենցաղը: Դրանք կենսական լիցք են հաղորդում աշխատավոր մարդուն, նպաստում նրա ստեղծագործական ու-

ժերի բացահայտմանն ու բազմապատկմանը: Եվ զուր չէ ԽՄԿԿ Կենտկոմի պլատֆորմի նախագծում ասվում, որ կուսակցության քաղաքականության կենտրոնում մարդն է: Այդ խնդիրները կոլտնտեսության կուսկազմակերպության և վարչության տեսադաշտում են: Եվ այդ առումով մեզ մոտ զգալի գործ է արվել: Գյուղական մշակույթի տունը դարձել է մեր մարդկանց հանգստի ցանկալի վայրը: Այստեղ կան զանազան խաղամիջոցներ, գործում են գեղարվեստական ինքնագործունեության խմբեր, ընթերցասրահում միշտ լինում են թարմ թերթեր ու ամսագրեր: Նորոգվել ու կանոնավորվել են անասնապահական ֆերմաների ակումբը, հանգստի սենյակները, կարմիր անկյունը, ասֆալտապատվել են գյուղի փողոցների մեծ մասն ու կաթնապրանքային ֆերմայի տարածքը: Օրակարգում են ֆերմայի բաղնիքի կառուցումը, նոր թաղամասի գազիֆիկացումը:

Ասել, թե սոցիալական բոլոր հարցերն են լուծված, ճիշտ չի լինի: Առանձին թաղամասերում պակասում է խմելու ջուրը, ճիշտ է, գործում են սպորտային խմբեր և անցկացվում են միջոցառումներ, սակայն գյուղը զուրկ է սպորտային համալիրից ու հրապարակից: Կոլտնտեսությունն ունի անհրաժեշտ դրամական միջոցներ, կազմվել են ամբուլատորիայի, կինոթատրոնի շենքերի, ջերմատան նախագծային փաստաթղթերը՝ 1,2 միլիոն ռուբլու արժողությամբ, սակայն վերադաս մարմինները երկրորդ տարին է՝ ձգձգում են դրանց շինարարության պլանավորումը:

Կոմունիստների ակտիվության բարձրացման և նախաձեռնության զարգացման, կոլտնտեսության հաջողությունների ապահովման և պարենային ծրագրի իրականացման գործում շատ կարևոր է կուսկազմակերպության և կոլտնտեսության վարչության համագործակցությունը: Մարդիկ նաև դրանով են դատում մեր գործունեության մասին: Կոլտնտեսության վարչության նախագահ Գ. Հարությունյանը մեր կուսկազմակերպության բյուրոյի, ինչպես նաև ՀԿԿ Արտաշատի շրջկոմի բյուրոյի անդամ է, արտադրության հմուտ կազմակերպիչ և լավ է պատկերացնում, թե ինչպիսի հսկայական նշանակություն ունի այդ համագործակցությունը: Մեզ մոտ գոյություն ունի ճիշտ փոխըմբռնում, վարչությունը ապավինում է կուսկազմակերպության, նրա բյուրոյի օգնությանը: Կուսժողովներում և բյուրոյի նիստերում պարբերաբար քննարկում ենք կոլտնտեսային արտադրությանը, գյուղի սոցիալական զարգացմանը, քաղաքական-մասսայական աշխատանքին վերաբերող հարցեր, դրանց լուծման գործում բարձրացնում կոմունիստների, այդ թվում ղեկավար կադրերի, պատասխանատվությունն ու ակտիվությունը:

Կուսկազմակերպությունը ինչպես միշտ, այսուհետ ևս ամեն ինչ կանի՝ բարձրացնելու կոմունիստների ակտիվությունն ու ավանգարդային դերը, իր ավանդը կներդնի երկրում իրականացվող վերակառուցման գործում, արժանավայել ձևով կդիմավորի կուսակցության XXVIII համագումարը...



# ԱԶԳԱՅԻՆԻ ՍՈՑԻԱԼԱԿԱՆ ԲՆՈՒՅԹԸ

**Ա. ՀՈՎՍԵՓՅԱՆ**
**Լ. ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ**

ՏԱՐԲԵՐ ԵՆ ԵՂԵԼ ՄԵՐ ԲԱԶՄԱԶԳ երկրի ժողովուրդների նախահեղափոխական ճակատագրերը: Յուրաքանչյուրն ունեցել է խորհրդային իշխանության հաստատման իր ուղին, ունեցել սոցիալական և մշակութային զարգացման ուրույն մակարդակ: Սրան հավելենք ամեն մի ժողովրդի մեջ յուրակերպ դրսևորվող տարաբնույթ ու բազմանիստ ազգային առանձնահատկությունները, պատմական հիշողությունն ու ավանդույթները (որոնք մշակութային կյանքում նշանակալի ազդեցություն են գործում կենսական արժեքներն ըմբռնելու վրա), կուլտուրական մակարդակը, էթնիկական գործոնները, ազգային բնավորությունը, հոգեկան կերտվածքը, բարոյական հիմքերը, իրեն դեռևս բնավ չսպառած կրոնական գործոնը, աշխարհագրական առանձնահատկությունները և այլն:

Տոտալիտար վարչակարգը ոչ միայն անտեսում է ընդհանուրն ու ազգային-առանձնահատուկը մարդու մեջ, այդ առանձնահատկությունները ոչ միայն չեն դիտարկվում իբրև յուրատեսակ պրիզմա, որում բեկվում են տեղի ունեցող պրոցեսները, այլև կույրորեն ոտնահարվում են, քանզի դրանք հակասում են այն կարգախոս-պահանջին, համաձայն որի բոլորը պետք է միմյանց նման լինեն, պետք է «բոլորին չափել միևնույն արշինով»: Տոտալիտարիզմի պայմաններում ժողովուրդների ինտեգրացմանը փորձում են հասնել ասիմիլյացիոն գործընթացների խթանմամբ՝ ազգային, լեզվական, կրոնական և այլ միատարրություն ստեղծելու միջոցով: Դա թելադրված է հասարակության համահարթման, այն սոցիալապես համասեռ դարձնելու ձգտմամբ՝ ինչպես ազգային ինքնագիտակցության և միավորող այլ գործոնների, այնպես էլ անձի անհատականության տրոհման ճանապարհով:

Մարդկանց, ազգերի համահարթումը, դիմազրկումը տեղի էին ունենում դեմոկրատիայի և ֆեդերալիզմի, ազգերի բարգավաճման ու մերձեցման, նրանց միաձուլման, մարդկային մտացածին նոր հանրության՝ «խորհրդային ժողովրդի» ստեղծման մասին կարգախոսների ներքո:

Պաշտոնական պրոպագանդայի ջանքերով հասարակության մեջ արմատավորվել էր միաբանության, մտքերի և գործողությունների միասնականության պատրանք, մինչդեռ տնտեսական ոլորտում թույլ տրված սխալներին գումարվում էին աքսորված ժողովուրդների ողբերգությունը, անզիջում պայքար էր մղվում կրոնների ու աղանդների, «այլակարծության» դեմ: Պետականության կառուցվածքն իսկ՝ հիմնված ագլոմերացիաների սահմանների կամայական որոշման, փոքրաթիվ ժողովուրդների իրավունքների ոտնահարման, հանրապետությունների ու ինքնավարությունները հիերարխիական կենտրոններից ղեկավարվող ծայրագավառների աստիճանի հասցնելու վրա, հանգեցնում էր ազգային նվաստացածության գիտակցմանը երկրի բոլոր ռեգիոններում: Անձի իրավունքների և անվտանգության երաշխիքների բացակայությունը, նրա ճնշումը նոր երանգ էին հաղորդում կրոնական, էթնիկական և ազգային պրոբլեմներին: Հարաբերությունների գոյություն ունեցող կառուցվածքը կանգուն էր մնում տոտալիտար վարչակարգի հզորության հանդեպ տածած վախի շնորհիվ:

---

*ՀՈՎՍԵՓՅԱՆ ԱՐՄԵՆ ԱՄԻՐԽԱՆԻ— Հայաստանի կոմկուսի Կենտկոմի ազգային հարաբերությունների սեկտորի վարիչ, պատմական գիտությունների թեկնածու:*

*ԲԱՂԴԱՍԱՐՅԱՆ ԼԵՎՈՆ ԲԱՂԴԱՍԱՐԻ— «Լենինյան ուղիով» ամսագրի գլխավոր խմբագրի տեղակալ, բանասիրական գիտությունների թեկնածու:*

Հասարակության զարգացման օրենքները, ինչպես և ֆիզիկայի օրենքները, անխախտելի են: Եթե ճշգրիտ գիտություններում բնության օրենքների իմացությանը հետևում է դրանց գիտակցված կիրառումը, ապա, ցավոք, հասարակական կյանքի օրենքների իմացությունը ամեն քայլափոխի ուղեկցվում է դրանց ժխտմամբ, մերժմամբ, ոտնահարմամբ: Վարչահրամայական համակարգի մարքսաբանող առաջնորդների դիլետանտիզմը հանգեցրեց «զորանոցային» սոցիալիզմի կառուցմանը, ուր միասնականացման՝ իբրև ինտերնացիոնալիզմի, և ազգերի միաձուլման՝ իբրև ազգային տարբերությունների հաղթահարման արդյունքի մասին կեղծ պատկերացումները տանում էին դեպի ամենքի և ամեն ինչի համահարթում՝ ինչպես խմբային, այնպես էլ անհատական մակարդակներում, անհատի և նրան շրջապատող սոցիալական միջավայրի միջև կապերի խզում: Վարչահրամայական համակարգին հարկավոր էր իր սոցիալական, ազգային և այլ կապերի աղճատված գիտակցությամբ անհատի տիպ, որն ընդունակ լինել ոտնահարելու ընտանիքը, միսիոների ջանադրությամբ քարուքանդ անելու նախնիների գերեզմանները ու մշակույթի հուշարձանները:

Այս գործընթացները ծավալվում էին մասսայական գիտակցության մեջ որոշակի գաղափարախոսական ուսմունքների և կողմնորոշումների ներդրման ֆոնի վրա, որոնք ամբողջությամբ կամ մասնակիորեն ներհակ էին հասարակական պրակտիկային: Վարչահրամայական համակարգի գաղափարախոսությունը ակտիվորեն ներդրվում էր մարդկանց գիտակցության մեջ, փոխակերպվում ժողովրդական լայն զանգվածների աշխարհընկալման: Նոր գաղափարախոսությունը, տարրալուծված հումանիստական արժեքների մասին շաղակրատանքի հետ, սքողելով առկա մշակութային շերտը, պետք է դառնար բազմազգ պետության սահմաններում բնակվող ժողովուրդների գլխավոր հոգևոր կողմնորոշիչը, ժողովուրդներ, որոնք գտնվում էին զարգացման տարբեր աստիճանների ու մակարդակների վրա՝ ֆեոդալանորտատիրականից մինչև բուրժուադեմոկրատական, ունեին անհատի հանդեպ վերաբերմունքի ամենատարբեր ավանդույթներ, մինչդեռ տոտալիտարիզմը գործնականում շարունակ հակասության մեջ էր մտնում իր իսկ գաղափարախոսության հռչակած նորմերի հետ: Ընդ որում ցանկալին ներկայացվում էր որպես իրականություն, ստեղծվում էր հատուկ գրականություն, որի հիմքում ոչ թե կուլտուրական ու կենցաղային փոխհարաբերությունների ամենօրյա փորձն էր, միմյանց հետ շփվող ազգերի ու ազգությունների առանձնահատկությունները, այլ վերացական նորմատիվ իդեալի իրացման պահանջը: Մշակվում էին ազգամիջյան հաղորդակցման վերացական գումարելիներ (գիտելիքներ, համոզմունք, վարվելաձև) և այդ սխեմաներին հարմարեցվում էին իրականում գոյություն ունեցող, այն էլ՝ ձևախեղված փոխհարաբերությունները: Որևէ կոլեկտիվի, քաղաքի սոսկ բազմազգ լինելը ներկայացվում էր իբրև պրոլետարական ինտերնացիոնալիզմի գաղափարի գործնական դրսևորում, այս կամ այն ժողովրդի մշակույթի մեջ առկա գործընթացները մեկնաբանվում էին որպես սոցիալիստական ռեալիզմի մեթոդի միավորիչ միտումների իրականացում և այլն:

Հասարակագիտության մեջ գերիշխում էր այն մտայնությունը, թե ինտերնացիոնալ է այն, ինչը «միավորում է»՝ գոյացնելով մի ընդհանրություն, որը ներկայանում էր իբրև անանց արժեք: Դրանով իսկ բուն ազգայինի ամբողջ ոլորտը համարվում էր «տարանջատիչ» և բացատրվում որպես «քողարկված կամ բացահայտ նացիոնալիզմ», որի դեմ անողոք պայքար էր մղվում: Ավելին, սոցիալ-տնտեսական կյանքի ինտերնացիոնալացումը, որը նույնպես ուղեկցվում էր բարդ ու ոչ միանշանակ գործընթացներով, մեքենայաբար տեղափոխվում էր հոգևոր ոլորտ: Զարգացումն ուղղված էր բազմազգ երկրում հասարակության սոցիալապես միասեռ կառուցվածքի հաստատմանը, որը պետք է դառնար ազգերի մերձեցման, ապա և միաձուլման տնտեսական հիմքը: Ընդ որում, ինչպես «քաղաքի ու գյուղի միջև տարբերությունների» վերացման կարգախոսով ոչնչացվում էին «անհեռանկար» ու «անարդյունավետ» գյուղերը, այնպես էլ ազգային-ինքնատիպը ոչնչացվում էր «սոցիալիստական ազգերի ծաղկման» դրոշի ներքո: Նույն եռանդով հարձակումների էին ենթարկվում յուրօրինակ ավանդույթները, սովորույթները, մշակույթը, կենցաղային առանձնահատկությունները, միջանձնային և ներընտանեկան հարաբերությունների ոլորտը: Որոշ հանրապետություններում արմատախիլ էր արվում մայրենի լեզուն: Գաղափարախոսությունը, որը գործնականում առճակատում էր ինչպես տնտեսական գաղափարի, այնպես էլ ազգայինի ամբողջ ոլորտի հետ, իր հետքն է թողել այդ մարզի ավերման գործում:



Ինչպես տնտեսության մեջ ինտերնացիոնալացումն ու «պետական» շահը (կամ ինչ որ հասկանում էին այդ ասելով) հանգեցնում էին բնական միջավայրի գիշատչական ոչնչացմանը, ինչն առանձնապես իրատեսորեն դրսևորվեց Հյուսիսի փոքրաթիվ ժողովուրդների բնակության շրջաններում (ասենք, նման փաստեր կարելի է բերել երկրի բոլոր ռեգիոններից), այնպես էլ օր-օրի և հետևողականորեն այդօրինակ ավերիչ ազդեցության էին ենթարկվում, և գրեթե միևնույն հետևանքներով, լեզուները, մշակույթները, կենցաղը: Միասնականացման միտումները համակել էր հասարակական կյանքի բոլոր բնագավառները: Այն անդրադարձավ և՛ դպրոցական գործի, և՛ աշխատավարձերի, և՛ բարձրագույն կրթությամբ մասնագետների պատրաստման համակարգի վրա: Միասնականացումը և դրա վրա խարսխված հետ մնացողների հետ հավասար քայլելու քաղաքականությունը տասնամյակներով հետ շպրտեցին տնտեսության և մշակույթի մեջ դարերի ընթացքում կայուն դիրքեր նվաճած ժողովուրդներին:

Նոր հասարակության ծրագրային նպատակ հռչակված նոր մշակույթի ձևավորումն ու ներդրումը, կուլտուրական հեղափոխության իրականացումը հանգեցրին անգրագիտության վերացման գործընթացի, որն ինքնին, անշուշտ, շատ կարևոր էր, բայց միայն որպես անհատի հետագա ազատ զարգացման նախադրյալ: Հենց այդ պատճառով էլ ամենահիմնական գործը՝ մշակույթի ասպարեզում նոր գաղափարախոսության ներդրումը, ընթանում էր արգելակումներով: Այստեղ գոյավորվեց լռության մի տևական ժամանակաշրջան, երբ ստեղծագործական միտքը չէր կարողանում ազատություն ստանալ: Պատվիրված կամ «արքունի» արվեստի տեսքով առաջին պլան մղվեց մշակույթի արտաքին-երևութական կողմը, ուր գերակշռում էին սահմանափակ իդեալներով հերոսներ: Տեղի ունեցավ գիտակցության օտարում ազգային մշակույթից:

Մշակույթի ազգային առանձնահատկությունների մասին խոսելիս հարկ է ելակետ ունենալ այն դրույթը, որ մշակույթների բովանդակության հայտնի ընդհանրությունը, ինչպես նաև դրանց ազգային առանձնահատկությունները չեն գոյատևում միմյանցից մեկուսացված, այլ դիալեկտիկական միասնություն են կազմում՝ արտահայտելով համամարդկայինի ու ազգայինի միասնականությունը յուրաքանչյուրի մեջ: Որևէ ազգի կամ ազգության պատմության մեջ առկա այն առանձնահատուկի ուսումնասիրման անհրաժեշտությունը, որը հիմք է ծառայում տվյալ ժողովրդին յուրահատուկ գծերի գոյավորման համար, պարզապես դեն էր շպրտվում: Ազգային ինքնատիպությունը հայտարարված է իռացիոնալ ոլորտ: Անտեսվում էին ժողովրդի կյանքի, նյութական արտադրության պայմանների առանձնահատկությունները, դարերի ընթացքում մարդկանց վրա այնպիսի գործոնների ազդեցությունը, ինչպես լեզուն ու կրոնը, որոնց ամբողջությունը հանգեցնում է ազգային-յուրահատուկի կազմավորմանը և փոխանցվում է սերնդեսերունդ՝ արտացոլվելով գիտակցության, մշակույթի մեջ:

Յուրաքանչյուր ժողովրդի կենսաձևին ներհատուկ են յուրօրինակ ավանդույթներ, սովորույթներ, մշակույթ, կենցաղ: Այս իմաստով ցանկացած ազգ հավասար է մյուսներին: Եվ մեր ամբողջ հասարակական կյանքը բաբախում է միս ու արյուն ստացած ու նյութականացած կենցաղային ոլորտի, առտնին հոգեբանության բարդ ու հակասական անտեսանելի մեխանիզմի միջոցով: Արմատավորված պատկերացումների ու հայացքների, երբեմն կանխակալ կարծիքների ու նախապաշարումների, սոցիալական, տարածքային, տարիքասեռային բազմազան առանձնահատկությունների թնջուկում նկատելիորեն վերափոխվում, հաճախ անճանաչելիորեն կերպարանափոխվում են ընդհանուր կողմնորոշումները, ծրագրերը:

Կարելի է վստահորեն պնդել, որ ընդհանուր սոցիալական լճացման գրեթե միատեսակ վիճակում գտնվող տարբեր առանձնահատկություններով հանրապետություններում դրսևորվել է նաև ազգային-մշակութային մի շերտ, որն օբյեկտիվորեն հանդես է գալիս իբրև ինտեգրացիոն գործընթացների «սահմանափակիչներից» մեկը: Չէ՞ որ անհատի մեջ սոցիալականն ու ազգայինը միաձուլված են, մարդը դրանց միագումարության կրողն է:

Արգելակման մեխանիզմը գոյացնող բացասական երևույթները, ընդհանուր գծերի հետ մեկտեղ, ունեն նաև իրենց ազգային յուրահատկությունները: Եթե մերձբալթյան հանրապետություններում մարդկանց նախաձեռնությունը կասեցնում էին բյուրոկրատական պատնեշները, ապա Միջին Ասիայում, Ղազախստանում և մասամբ անդրկովկասյան հանրապետություններում տեղական բյուրոկրատական շա-

նեկան-կենցաղային կուլտուրա, և, վերջապես, բոլոր ենթահամակարգերի հետ միագումարություն կազմող սոցիոնորմատիվային, բարոյական կուլտուրան, որի կարևորությունն առավել սուր կերպով զգացվում է վերջին ժամանակներս: Այդպիսի արդյունքներ ստացվել են: Դրանք «ԽՍՀՄ-ում ազգերի զարգացման և մերձեցման սոցիալ-մշակութային պայմանների օպտիմալացումը» ծրագրով մի շարք հանրապետություններում, այդ թվում նաև Հայաստանում, ԽՍՀՄ ԳԱ ազգագրության ինստիտուտի, էթնոսոցիոլոգիայի բաժնի կողմից սույն հոդվածի հեղինակների մասնակցությամբ անցկացված էթնոսոցիոլոգիական հետազոտությունների արդյունքներն են:

Սոցիալական և ազգային հանրություններում մշակույթի դերի համապարփակ հետազոտությունը հնարավորություն ընձեռեց վերլուծելու մշակույթի տարբեր տարրերի, օրինակ, կրթության և մարդկանց քաղաքական կուլտուրայի, հասարակական կյանքի նկատմամբ նրանց ունեցած հայացքների փոխկապվածությունը, ընդունված կենսական արժեքների, տարբեր սոցիալական ու ժողովրդագրական խմբերի ձգտումների և զանազան, այդ թվում նաև գաղափարախոսական արժեքների հանդեպ նրանց վերաբերմունքի փոխադարձ կախվածությունը:

Հետևաբար, ազգային յուրահատկությունը կայունորեն ազդում է մարդկանց մշակութային շահերի ու կողմնորոշումների վրա: Հետազոտությունից բխող մեկ այլ եզրակացություն ևս. ժողովուրդների կրթական մակարդակների և իրազեկության աստիճանների մեջ նմանությունների աճի հետ մեկտեղ տարբերությունները մշակութային գործունեության առավել բարդ տեսակներում մոտակա հեռանկարում կպահպանվեն:

Այնուամենայնիվ, զանգվածային լրատվության միջոցների շնորհիվ մարդկանց հայացքներն ու պատկերացումները ձևավորվում են նախապես առաջադրված միասնական մոդելի հիման վրա՝ աստիճանաբար մոտենալով իրար. աշխարհայացքով, վարքի նորմերով ոչ վաղ անցյալում հաճախ իրարից խիստ տարբերվող ժողովուրդները պատմականորեն կարճ ժամանակահատվածում զգալիորեն մերձեցել են միմյանց իրենց քաղաքական պատկերացումներով և աշխարհայացքային արժեքներով: Դա բնական գործընթաց է, որը, սակայն, ինքնաբերաբար չի ընթանում, այլ պետք է կառավարվի:

Յուրաքանչյուր ժողովրդի մշակույթի մեջ առանձնապես կարևորվում է անձնային արժեքների համակարգը, քանի որ այստեղ կարելի է ակնկալել ազգային առանձնահատկությունների առավել ուժեղ դրսևորում, և, միևնույն ժամանակ, մշակույթի հենց այդ առանձնահատկությունները կարող են անմիջականորեն ազդել մարդկանց սոցիալական վարքի վրա: Եվ մեկ այլ եզրակացություն ևս. ոչ միանման ճիգեր կպահանջվեն հասարակությունից, որպեսզի դրանց միացվեն այս կամ այն սոցիալական շերտը, ինչպես նաև ազգային շրջանները, քանի որ դրանց սոցիալական կազմը տարբեր է: Սրա հետ կապված անհրաժեշտ է նաև հաշվի առնել միջանձնային հարաբերությունների կուլտուրայում, կենցաղային կյանքի նորմերում ազգային ավանդույթների կայունությունը: Ազգային առանձնահատկությունները, առաջին հերթին նրանք, որոնք պայմանավորված են ժողովուրդների անցյալով, նրանց ուրբանիզացման աստիճանով, զգալի ազդեցություն ունեն և դեռևս երկար ժամանակ կներգործեն բնակչության սոցիալական վարքի, հատկապես մասնագիտական կողմնորոշման և զբաղվածության վրա:

Հետազոտության արդյունքները հիմք են տալիս եզրակացնելու, որ քաղաքական կողմնորոշումների, սոցիալ-տնտեսական հարաբերությունների ընդհանրության, սոցիալական կառուցվածքի սկզբունքային նմանության պայմաններում ժողովուրդների կուլտուր-կենցաղային կյանքում պահպանվում է ազգային յուրահատկությունը, որը նկատելի ազդեցություն է գործում նրանց ամենօրյա սոցիալական վարքի, գաղափարախոսական կողմնորոշումների ձևավորման վրա:

Ապրելով բազմազգ երկրում, սոցիալական, քաղաքական, համամարդկային արժեքների դիրքերից բարձր գնահատելով ժողովուրդների և տարբեր ազգության մարդկանց միջև հաստատված մարդասիրական և բարյացակամ հարաբերությունները, մենք իրավունք չունենք թերագնահատելու կամ չհարգելու մարդկանց ազգային զգացումները, ազգային մշակույթը: Դրանք սնում են իրականության մեջ առկա ազգային ինքնագիտակցությունը:

Մինչև վերջին ժամանակներս գիտական գրականության մեջ լայնորեն տարածված էր այն թյուր կարծիքը, թե մեր հասարակության զարգացման արդի փուլում



ազգային առանձնահատկությունները դրսևորվում են, իբր, հիմնականում մարդկանց առօրյա վարքում, հոգևոր մշակույթի մեջ: Նրանց կենսագործունեության մյուս բնագավառներում ազգերի միջև եղած տարբերությունները համարվում էին երկրորդական գործոն: Այն մտայնությունն էր իշխում, թե խորհրդային ժողովուրդների սոցիալ-մշակութային ընդհանրությունը խարսխված է սոցիալ-տնտեսական, արտադրական հարաբերությունների՝ բոլորի համար միասնական համակարգի վրա: Սա էլ հենց հիմք է ծառայում սոցիալական միացյալ կառուցվածքի, տնտեսական և քաղաքական կարգի, իրավական հարաբերությունների, մշակույթի գաղափարախոսական ուղղվածության, աշխատանքի և հանգստի ընդհանուր պայմանների առաջացման համար, որոնք զգալի չափով կանխորոշում են ԽՍՀՄ ժողովուրդների զարգացման սոցիալական բովանդակությունը:

Բայցևայնպես, սոցիալական հարաբերությունների միատարրությունը չի նշանակում, թե խորհրդային ժողովուրդների սոցիալ-էթնիկական ինտեգրացումը գտնվում է ավարտական փուլում: Ավելին, հիմնականում պատմական անցյալով պայմանավորված ազգային գործոնները շարունակում են էական ազդեցություն ունենալ սոցիալական գործընթացների վրա, այս կամ այն ռեգիոնում դրանց հաղորդում են որոշակի յուրահատկություններ:

Այս իմաստով սոցիալ-էթնիկական ընդհանուր գործընթացներում առանձնահատուկ տեղ է զբաղեցնում Հայաստանը՝ վարքի նորմերում և ավանդույթներում, սովորություններում ու ծեսերում պահպանելով ազգի մշակույթի ավանդական հատկանիշները: Դրան նպաստում է հանրապետության բնակչության կազմի մեջ բնիկ ազգության գերակշռությունը (ավելի քան 90 տոկոս): Հասարակական գիտակցության ձևավորման գործում պատմական ընդհանրություններ ունենալով այլ ժողովուրդների հետ, հայերը, միևնույն ժամանակ, որոշակի պայմանների պատճառով շատ բաներում դարձյալ տարբեր են: Այսպես, տասնամյակների ընթացքում «միաչափ» անհատ ձևավորելու ձգտումը բախվում էր ամուր և կենսունակ դարձած խոչընդոտների. սեփական կարծիքը և սեփական «ես»-ը: Դրան ի հակադրություն, կոլեկտիվ պատասխանատվությունը նրա, մեղմ ասած, ոչ այնքան ուժեղ կողմն է:

Էթնիկական առանձնահատկությունները բնորոշ են ոչ միայն միկրո, այլև մակրոսոցիալական գործընթացներին: Ինչպես վկայում են վիճակագրական տվյալները, չնայած խորհրդային հասարակության մեջ կատարված սոցիալական տեղաշարժերին, ազգերը որոշակի կերպով տարբերակված են «քաղաքայինի» և «գյուղականի»: Այսպես, 1979 թ. մարդահամարի համաձայն, ռուսների մեջ քաղաքաբնակները կազմում էին 77, հայերի մեջ՝ 71, էստոնացիների մեջ՝ 64 տոկոս: Մինչդեռ քաղաքաբնակ էր ղազախների 31, տաջիկների 28, կիրգիզների 21 տոկոսը: Իհարկե, հարկ չկա բացարձակացնելու բերված թվերը, քանի որ ուրբանիզացիան պայմանավորված չէ միայն քաղաքներում բնակչության կենտրոնացմամբ: Այնուամենայնիվ, քաղաքի և գյուղի միջև տարբերությունը հանգեցնում է ազգի դասակարգային և սոցիալ-մասնագիտական կառուցվածքների միջև տարբերության: Կարելի է, հավանաբար, եզրակացնել, որ բնակչության սոցիալական կազմի ազգային առանձնահատկությունները, նրա որակավորումը իրենց արտացոլումն ու շարունակությունն են գտնում արժեքային կողմնորոշիչների համակարգում, ժողովրդի սոցիալական հոգեբանության՝ դրանցում կենտրոնացված գծերում:

Այսօր, չնայած սկզբունքային սոցիալ-հոգեբանական բնութագրերի նկատելի փոխակերպությանը, պայմանականորեն եվրոպական և ասիական անվանված ազգերի միջև այս տեսակետից հայտնի տարբերություններ կան (տե՛ս Арутюнян Ю. В. Дробижева Л. М., Кондратьев В. Ф., Сусоколов А. А., Этносоциология: цели, методы и некоторые результаты исследования, М., Наука, 1984):

Հետազոտությունների համաձայն, կենցաղային կուլտուրայի ազգային առանձնահատկությունների դերը զգալիորեն դուրս է գալիս նեղ իմաստով կենցաղի սահմաններից: Դրանք ներազդում են սոցիալական վարքի ամենատարբեր կողմերի վրա: Այդ առանձնահատկությունների անտեսումը հղի է սոցիալական և տնտեսական լուրջ հետևանքներով: Դժվարանում է գաղափարական ներգործությունը մարդկանց վրա, մյուս կողմից՝ այն կարող է հիվանդագին դիպչել նրանց ազգային զգացմունքներին:

Ազգային գործոնների դերն էլ ավելի մեծ է սոցիալ-մշակութային կյանքի այնպիսի ոլորտում, ինչպիսին միջանձնային հարաբերություններն են: Այս գործում հրատապ է ժողովուրդների սոցիալ-մշակութային շփման հետագա ակտիվացման

Մեր հասարակության պատմական զարգացման ընթացքում գաղափարախոսության խնդիրն էր ազգերի ժառանգած մտածողությունը նորով փոխարինելը, ինչը ոչ միշտ էր հաջողվում և ոչ միշտ էր համապատասխանում ժողովուրդների աշխարհընկալմանը, մշակութային ավանդույթներին և արժեքային կողմնորոշումներին: Այդ են վկայում ազգային հարաբերությունների կարգավորման՝ վերակառուցմամբ հարուցված գործընթացի երբեմն սուր դրսևորումները. վերակառուցման ժամանակաշրջանի բոլոր նոր գաղափարները (ինչպես դա եղել է պատմական անցյալում) արտացոլվում են՝ բեկվելով ազգային մտածելակերպի և գործելակերպի պրիզմայի մեջ:

Այժմ, ճիշտ է, ցավագին հապաղմամբ, մեզանում ստեղծվում են գաղափարախոսության և ազգային մտածելակերպի միասնության իրական պայմաններ, որոնց հիմքում ընկած է քաղաքական նոր մտածողության մեթոդաբանությունը: Եվ պետք է հուսալ, որ գաղափարախոսական ներգործության ասպարեզում այսուհետև երբեք զանց չեն առնվի ազգային-մշակութայինը, ազգային մտածողությունը, առաջինը երբեք չի գործի երկրորդի դեմ: Վերակառուցվել այս հարցում՝ նշանակում է մեկընդմիշտ ապահովել ազգային մտածողության և գաղափարախոսության ներքուստ համակարգված դիալեկտիկական միասնությունը:

Այսպիսով, միանգամայն ակնհայտ է, թե ազգային հատկանիշները, ազգային հոգեբանությունը ինչպիսի էական ուղղումներ են կատարում հասարակության սոցիալական կյանքի մեջ: Դա մեկ անգամ ևս հաստատում է, որ հասարակության վերակառուցման հետ կապված հարցերի լուծման համար կարևոր նշանակություն ունի երկրի տարբեր շրջանների ազգային առանձնահատկությունների հաշվառումը: Ազգային-առանձնահատուկը, հակառակ մարգարեների, որոնք գուշակում էին նրանց արագ անհետացումը «գիտատեխնիկական ծավալվող հեղափոխության», ազգերի և ժողովուրդների «միաձուլման», «ազգային անջրպետների խորտակման» (ինչը նրանք համարում էին երկու-երեք տասնամյակների գործ) ազդեցությամբ և այլն, դեռևս երկար կգոյատևի:

Սոցիալիստական ինտերնացիոնալացման շրջանակներում տնտեսական և հոգևոր կյանքի ոլորտներն ընդգրկող բնական ինտեգրացման գործընթացները, որոնք հիմնված կլինեն ոչ թե ազգայինի ճնշման, այլ զարգացման վրա, կարող են դառնալ հասարակության սոցիալական կառուցվածքի հետագա համահարթման, ժողովուրդների մերձեցման, ազգային, հոգևոր մշակույթի որակական աճի գործոն:

Այսօր գաղափարախոսական շատ աշխատողների դեռևս անհասկանալի է, թե ինչ է ազգային գործոնի վիճակի, միջավայրի ինտերնացիոնալիստական բաղադրամասերի մոդելացման, ազգային և ինտերնացիոնալ օբյեկտիվ գործընթացների վրա ազդեցությունների, ինտերնացիոնալիստական հոգեբանության կազմակերպական-քաղաքական հիմնավորման, արժեքային կողմնորոշումների, ազգամիջյան հարաբերությունների կուլտուրայի ձևավորման հաշվառմամբ կատարվող գաղափարախոսական աշխատանքը:

Գաղափարախոսական աշխատանքում դեռ այսօր էլ անբավարար է հաշվի առնվում ազգային, էթնիկական ինքնագիտակցության գործունեության իրական վիճակը: Ամենից առաջ նկատի ունենք ազգի մի հատվածի էթնիկական ինքնագիտակցության աստիճանը (սա առաջին հերթին վերաբերում է հայ ժողովրդին): Մենք դեռևս վատ գիտենք, թե հասարակական կյանքի տարբեր կողմերը, բեկվելով ազգային շահերի ու պահանջմունքների միջով, ինչպես են արտացոլվում ազգային հարաբերություններում:

Պրակտիկ աշխատանքում ազգայինի ոլորտը կազմող բոլոր գործոնների հաշվառումը, դրանք գնահատելու ունակությունը միայն հնարավորություն կընձեռեն ըմբռնելու այն «սահմանափակիչները», որոնք անցյալում հանգեցնում էին խառնակուտակ հանրությունների քայքայմանը: Քաղաքական նոր մտածողությամբ հռչակված համամարդկային արժեքների առաջնայնությունը, տեղի ունեցող գործընթացների մեջ կամայական միջամտության պրակտիկայից հրաժարումը, թափանցելով ազգային հարաբերությունների ոլորտ, կարող են նոր ազդակ հանդիսանալ այն ամեն դրականի համար, ինչ իր մեջ կրում է բուն սոցիալիստական ինտեգրացիան:

---



# ՀԿԿ ԿԵՆՏԿՈՄՈՒՄ, ՀԽՍՀ ԳԵՐԱԳՈՒՅՆ ԽՈՐՀՐԴԻ ՆԱԽԱԳԱՀՈՒԹՅՈՒՆՈՒՄ, ՀԽՍՀ ՄԻՆԻՍՏՐՆԵՐԻ ԽՈՐՀՐԴՈՒՄ

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությունն ու Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհուրդը քննության առան Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի իրադրության հարցը՝ կապված այն բանի հետ, որ Ադրբեջանի ղեկավարությունը հակասահմանադրական միջոցներով վարում է հակահայկական քաղաքականություն, ոտնահարում է Լեռնային Ղարաբաղի հայ բնակչության իրավունքները, որի նպատակը ինքնավար մարզի փաստական վերացումն է:*

*Հունիսի 18-ին Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի որոշմամբ կախակայվել է կուսակցության Հադրութի շրջկոմի ու նրա բյուրոյի գործունեությունը: Կախակայվել է ժողովրդական դեպուտատների շրջանային խորհրդի ու նրա գործկոմի գործունեությունը: Շրջանի կուսակցական ու խորհրդային մարմինների լիազորությունները հանձնվել են այսպես կոչված շրջանային կազմբյուրոյին:*

*Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, Հայկական ԽՍՀ Մինիստրների խորհուրդը այդ ձեռնարկումները գնահատում են որպես պրովոկացիոն և անբարո, ԽՄԿԿ կանոնադրությանն ու ԽՍՀՄ սահմանադրությանը հակասող: Դրանք նպատակ են հետապնդում անկայունացնել իրադրությունը ԽՄԿԿ XXVIII համագումարի շեմին:*

*ԼՂԻՄ-ի տարածքում Ադրբեջանի ղեկավարության ապօրինի գործողությունները տեղի են ունենում երկրի ղեկավարության լռելյայն համաձայնությամբ: Ապակողմնորոշիչ հաղորդումներով հատուկ նպատակով և դիտավորյալ երկրում հակահայկական տրամադրություններ են բորբոքվում: Մոռացության են մատնվել Սումգայիթում, Կիրովաբադում, Բաքվում, Նախիջևանում և Ադրբեջանի այլ շրջաններում հայերի ցեղասպանության հրեշավոր ակտերը: Մինչև հիմա ի հայտ չեն բերվել հայ ժողովրդի դեմ ուղղված զանգվածային հանցագործությունների կազմակերպիչները:*

*Ռեգիոնում իրադրության հետագա սրումը կանխելու նպատակով Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բյուրոն, Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահությունն ու Մինիստրների խորհուրդը ԽՍՀՄ պրեզիդենտի առջև բարձրացրել են ԼՂԻՄ-ի ժողովրդական դեպուտատների քաններորդ գումարման մարզային խորհրդի լիազորությունները և մարզային խորհրդի 1990 թվականի մայիսի 27-ի նստաշրջանում հաստատված նրա գործկոմի լիազորությունները անհապաղ ճանաչելու, ԼՂԻՄ-ի տարածքում 1990 թվականի հունվարի 15-ին Բաքվի իրադարձությունների կապակցությամբ մտցված արտակարգ դրությունը վերացնելու, ինքնավար մարզի ներքին և Հայկական ԽՍՀ-ն ու Լեռնային Ղարաբաղը կապող ավտոճանապարհների շրջափակումը վերացնելու, իրեն չարդարացրած հանրապետական կազմկոմիտեն արձակելու և կուսակցության մարզային կոմիտեի գործունեությունը վերականգնելու անհրաժեշտության հարցը:*

# ՀԱՅԱՍՏԱՆԻ ՍՏԵՂԾԱԳՈՐԾԱԿԱՆ ՄԻՈՒԹՅՈՒՆՆԵՐԻ ԴԻՄՈՒՄԸ ՌՈՒՍ ՀԱՍԱՐԱԿԱՅՆՈՒԹՅԱՆԸ

Հարգելի բարեկամներ:

Մենք գրում ենք ձեզ ոչ թե արդարանալու, այլ ճշմարտորեն ներկայացնելու համար այն իրադրությունը, որի մեջ գտնվում է հիմա հայ ժողովուրդը: Գրում ենք վերստին հիշեցնելու համար, որ ղարաբաղյան շարժումը սկսել է ինքը՝ Լեռնային Ղարաբաղի Ինքնավար Մարզի 80 տոկոս կազմող հայ բնակչությունը, որը 70 տարի շարունակ կամայականորեն անջատված է եղել իր մայր ժողովրդից և, որը հավատալով վերակառուցմանը, վստահ էր, որ իր՝ բազմիցս բարձրացրած, բայց անողոքորեն լռեցված պահանջը՝ դուրս բերել մարզը Ադրբեջանի կազմից ու միացնել Հայկական Հանրապետությանը, այս անգամ արդեն կզոհացվի: Գրում ենք վերստին շեշտելու համար, որ մենք՝ Հայաստանի մարդիկս, նույնպես հավատացինք խոստացած վերափոխումներին և համերաշխության համազգային դրսևորումներով սատար կանգնեցինք Ղարաբաղի մեր հայրենակիցներին:

Ավաղ, հայ ժողովրդի վրա անասելի թանկ նստեց իր այդ միամիտ հավատը: Մենք կրեցինք վայրենաբարո ջարդերի ու բռնագաղթերի ահռելի հարվածները, որոնք մնացին համարյա անպատիժ: Մենք հանդիպեցինք կենտրոնական ղեկավարության տևական անհասկացողությանը, որը հետզհետե փոխվեց բացահայտ անբարյացակամության: Մենք ենթարկվեցինք միութենական քարոզչության հետևողական հալածանքներին, լրատվական ստին ու աղավաղումներին: Եվ միայն այս բոլորից հետո մենք, միամիտներս, վերջապես համոզվեցինք, որ քաղաքականությունը կարող է լինել ոչ միայն հաշվենկատ, այլև ցինիկորեն անարդար, անպարկեշտության հասնելու չափ՝ կողմնապահ: Մենք տեսանք, որ դա, այդ քաղաքականություն կոչվածը, կարող է հանդուրժել, որ կործանարար երկրաշարժի նյութական ու հոգեկան անասելի ծանրությունը կրող հողը ամիսներ շարունակ պահվի հակամարդկային շրջափակման մեջ, կարող է սադիստորեն չլսելու տալ Գերագույն խորհրդի նստաշրջաններում հնչող կիսավեր այդ հողի բողոքող ձայնը և, խախտելով ամենայն դեմոկրատիա ու օրինականություն, ընդունել արտառոց որոշումներ: Սրանք, հենց այս որոշումները, պայմաններ ընձեռեցին ադրբեջանական իշխանություններին ընդհանուր հարձակման անցնել՝ հատուկ զինվորական դրության պատճառով դիմադրելու հնարավորությունից զրկված՝ Ղարաբաղի ժողովրդի դեմ, վերահաստատել այնտեղ Ադրբեջանի ոստիկանական հսկողությունը, ծայրաստիճան ուժեղացնել մարզի ֆիզիկական, բարոյական ու լրատվական շրջափակումը, հմտորեն կազմակերպել դեմոգրաֆիական գրոհը, որը շատ շուտով մարզում կստեղծի ազգերի տոկոսային հավասարակշռություն և հիմք կտա վերացնելու՝ Բաքվին և Մոսկվային այնքան գլխացավանք պատճառած ինքնավար մարզը: Այսպիսով, ինչ չհաջողվեց անել զանազան ալիքներին անցած 70 տարիների ընթացքում, այն արագացրած տեմպերով գլուխ է բերվում հիմա, ազգային կազմավորումների բարգավաճում խոստացող վերակառուցման ժամանակներում...

Ցավալին այն է, որ ադրբեջանական իշխանություններին հաջողվում է այս բոլոր անօրինականությունները, ոտնձգություններն ու ճնշումները իրականացնել զինվորական պարետի ու նրա ստորադասյալների միջոցով, այսինքն ռուս զինվորի ձեռքով, և այսպիսով դեպի ռուսներն ուղղել զանգվածների արդարացի զայրույթը: Բնական է, որ զայրույթի այս հորձանքը իր ալիքներն է տալիս նաև Հայաստանում, բորբոքում առանց այն էլ աշխարհացունց երկրաշարժից և ազգային այլատեսակ վիրավորանքներից հոգեպես բզկտված ժողովրդին, խորացնում նրա մեջ խաբվածության, ազգային անպաշտպանվածության զգացումները, ստիպում մտածել



սեփական ուժերով իր ֆիզիկական գոյությունը պահպանելու մասին: Այստեղից էլ ինքնապաշտպանության ջոկատների առաջանալը, այստեղից էլ զենք ձեռք բերելու համար նրանցից ոմանց անօրինական, անթույլատրելի քայլերը:

Ահա, հարգելի բարեկամներ, բարոյաքաղաքական հիմքերը սույն թվի մայիսի 27-ին Երևանում տեղի ունեցած ողբերգական դեպքերի, որոնք անասելի վիշտ ու ալեկոծության մատնեցին մեր ժողովրդին: Չանսալով իրենց պետերի զգաստացնող խոսքերին, ինքնապաշտպանության ջոկատների մի քանի անդամներ, հայտնի չէ, թե ու՞մ սադրիչ դրդումով, փորձեցին զինաթափ անել Երևանի երկաթուղային կայարանում գտնվող զինվորական պահակախմբին և հանդիպեցին, թերևս ռազմական օրենքներով նախատեսված, բայց ծայրահեղորեն դաժան դատաստանի: Զինաթափվել պահանջող 10—15 երիտասարդներից 6-ը տեղնուտեղը սպանվեցին: Դեպքերի հետագա ցավալի ընթացքի հետևանքով զոհվածների թիվն ավելացավ ևս 18 հոգի, որոնցից մեկը՝ Խորհրդային Միության ներքին գործերի սպան, զոհ գնաց ինքնապաշտպանական ջոկատի կողմից արձակված գնդակին, իսկ մնացյալները, որ երևանցիներ էին, իրենց մահը գտան զորքերի ծավալած անխնա գործողություններից:

Մենք մեր խորունկ վիշտն ենք հայտնում ռուս սպայի ցավալի վախճանի համար և դատապարտում բռնության ամեն մի արտահայտություն, ում կողմից էլ որ գործադրվի այն: Միևնույն ժամանակ մենք չենք կարող զգաստ վերլուծության չենթարկել կատարվածը, չենք կարող չմտածել, թե ինչպե՞ս ծագեց և ու՞մ էր ձեռնտու այս եղեռնական իրադարձությունը: Կարծում ենք, որ դատարանը կպարզի այդ ամենը: Տարօրինակն այն է, որ մեր միութենական համապատասխան մարմինները, հեռուստատեսությունը, մամուլը, չսպասելով դատարանի եզրակացությանը, հայտարարում են, որ դա հայ տեռորիստների զազրելի գործն է, եղածը միակողմանի ներկայացնելով՝ բորբոքում են լայն զանգվածների վրդովմունքը հայերի նկատմամբ, ընդհանրացնում առանձին միջադեպերը՝ հանգեցնելով այն հետևողական տեռորիստական ակտերի: Պակասը լրացրեց մայիսի 28-ին Բաքվում՝ «ամենաինտերնացիոնալ այդ քաղաքում», կայացած զինծառայողների ժողովի դիմումը պրեզիդենտ Գորբաչովին, որտեղ պահանջվում է միջոցներ ձեռնարկել կանխելու համար հայ տեռորիստների հետագա հարձակումները ներքին զորքերի ստորաբաժանումների վրա: Ակամա ուզում ես հարցնել, ինչու՞ այդ ժողովը չգումարվեց և բողոքը Մոսկվա չառաքվեց այն օրերին, երբ Սումգայիթում, Կիրովաբադում մոլեգնած բանդաները սպանում էին հայերին պաշտպանող զինվորականներին, այն օրերին, երբ պետական սահմանը հարյուրավոր կիլոմետրերով ավերող սանձազերծ խուժանը կաթվածահար էր արել խորհրդային սահմանապահներին, այն օրերին, երբ Բաքվի թաղամասերում նույն այդ բանդաները հրով ու սրով բռնանում, իրենց բնակարաններից դուրս էին շպրտում ռուս զինվորականների ընտանիքները: Մենք ինչքան գիտենք, այդ ավազակախմբերից ոչ մեկը չարժանացավ «ադրբեջանական տեռորիստ» հորջորջմանը: Իսկ իրենց հանրապետության սահմանները, իրենց մայրերի ու քույրերի կյանքն ու պատիվը պաշտպանող աշխարհազորայիններին նույնացնելով հանցագործ տարրերի հետ, չգիտես ովքեր և ինչպես՝ շնչակտուր պատրաստակամությամբ, կանխավ պատվիրած արտահագուստի պես, իսկույն հագցրին «հայ տեռորիստ» պիտակը: Շատ է կասկածելի այս նախօրոք ընտրած կնքանունը և, մանավանդ, շատ է ձեռնտու ադրբեջանական կողմին: Ըստ երևույթին Գորբաչովի և Բուշի հանդիպման օրերին հարկավոր էր հիմնովին արատավորել ղարաբաղյան պահանջատիրությունը և խորապես դեմոկրատական, ազգային ինքնորոշումն ու մարդու իրավունքները հետապնդող շարժումը որակավորելով որպես տեռորիստական գործունեություն, նրա դեմ ուղղել միջազգային տեռորիզմի դեմ պայքարող մարդկության հասարակական կարծիքը: Միևնույն ժամանակ այդ իսկ որակումների հետևանքով լայնորեն ծավալվող հակահայկական հիստերիան նպատակ ունի նոր լիցք տալ այն հայատյաց տրամադրություններին, որ շարունակաբար հրահրում են խորհրդային երկրով մեկ անվերջորեն ճամփորդող մանր ու մեծ էմիսարները: Ցավոք սրտի, այդ տրամադրություններով էին հագեցած Ռուսաստանյան Ֆեդերացիայի ժողովրդական դեպուտատների առաջին համագումարում հնչող որոշ ելույթներ, այդ տրամադրություններն են խտանում օդում, անտեղյակ մարդկանց գիտակցության մեջ:

Հարգելի բարեկամներ:

Մեզ համար թանկ է խորհրդային երկրի, հատկապես ռուս ժողովրդի՝ մեր

մասին ունեցած համարումը. ժողովուրդ, որի հետ կապված ենք մեր պատմությամբ, դավանանքով, մշակութային առնչություններով: Մենք բարձր ենք գնահատում ռուս զինվորների, ռուս շինարարների օգնությունը, ինչպես երկրաշարժի առաջին օրերին, այնպես էլ ներկայումս, ավերված գոտին վերականգնելիս: Ուստի, չենք կարող չմտահոգվել, որ մութ ուժերի սադրանքներով խաթարվում է ողջ այս լավն ու լուսավորը, որ մեր շուրջը նյութվում են դավադիր գործողություններ և, ի դժբախտություն բոլորիս, պատահում է այնպես, որ փառաբանված ռուսական սվինը, որ հաճախ է պաշտպանել մեզ դարավոր թշնամիներից, այդ նույն մութ ուժերի դրդումով Ղարաբաղում ու Հայաստանում թափում է անմեղ մարդու արյուն:

Մենք կոչ ենք անում ձեզ թափանցել երևույթների խորքը և հանել ճշմարիտ եզրակացությունները, ճիշտ այնպես, ինչպես եղավ դա Թբիլիսիի ողբերգական դեպքերը վերլուծելիս:

Առանց բազմազգ երկրում գոյություն ունեցող բարդ, ոչ միանշանակ երևույթները խորապես հասկանալու և իմաստավորելու, առանց վճռականորեն դատապարտելու անարդարությունն ու բռնությունը, առանց ազգերի ու ազգային կազմավորումների իրավունքների ճանաչման չկա՛ և չի կարող լինել ազատ, արդար և դեմոկրատական հասարակություն, չկա և չի կարող լինել ազատ, արդար և դեմոկրատական Ռուսաստան:

**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԳՐՈՂՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԺՈՒՌՆԱԼԻՍՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՆԿԱՐԻՉՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿՈՄՊՈԶԻՏՈՐՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ՃԱՐՏԱՐԱՊԵՏՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԹԱՏԵՐԱԿԱՆ ԳՈՐԾԻՉՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**
**ՀԱՅԱՍՏԱՆԻ ԿԻՆՈԱՇԽԱՏՈՂՆԵՐԻ ՄԻՈՒԹՅՈՒՆ**

## ԽՍՀՄ ՊՐԵԶԻԴԵՆՏ Մ. Ս. ԳՈՐԲԱՉՈՎԻՆ

Հարգելի Միխայիլ Սերգեևիչ.

Ինչպես Ձեզ հայտնի է, մայիսի 27-ին Երևանում տեղի են ունեցել ողբերգական իրադարձություններ, որոնց հետևանքով զոհվել են հայազգի 23 քաղաքացի և խորհրդային բանակի մեկ զինծառայող: Մենք դատապարտում ենք բոլոր նրանց, ովքեր բռնել են խորհրդային բանակի մարտիկներից և իրավապահ մարմինների աշխատակիցներից զենքն ապօրինաբար զավթելու ուղին: Ինչպիսիք էլ որ լինեն այդպիսի արարքների դրդապատճառները, դրանք, անկասկած, անթույլատրելի են: Սակայն սահմանափակվել այդ դրույթով, նշանակում է ասել կիսաճշմարտություն, որը, ինչպես հայտնի է, ստից ավելի վատ է, քանի որ, ի տարբերություն վերջինի, իրեն որպես ճշմարտություն ներկայացնելու ավելի մեծ հնարավորություններ ունի:

Վերլուծելով տեղի ունեցած ողբերգության պատճառները, մենք հանգել ենք այն եզրակացության, որ դրանք չի կարելի հասկանալ անդրկովկասյան ռեգիոնում, Լեռնային Ղարաբաղում և դրա շուրջը վերջին ամիսներին ստեղծված իրադրությունից անկախ:

Մենք բազմիցս նախազգուշացրել ենք ԼՂԻՄ-ի ժողովրդի ինքնորոշման կամքը ճնշելու, բռնության և տեռորի փորձերով ինքնավար մարզում և դրան հարող հայաբնակ շրջաններում ժողովրդագրական իրադրությունը ադրբեջանական կողմի օգտին փոփոխելու հնարավոր ողբերգական հետևանքների մասին: Ռազմաքաղաքական դաժան ճնշումը, որին ենթարկվում է ԼՂԻՄ-ի հայ բնակչությունը ինքնորոշման, Ադրբեջանի այսպես կոչված հանրապետական կազմկոմիտեի կողմից արմատավորվող ապարտեիդի ռեժիմից ազատվելու նրա դեմոկրատական ձգտումը խեղդելու նպատակով, վերջին ամիսներին, հիրավի, հրեշավոր է դարձել: Արտակարգ դրության քողի տակ և ԽՍՀՄ ՆԳՄ ներքին զորքերի աջակցությամբ Բաքուն տենդագին ջանքեր է գործադրում մարզն ու նրան հարող շրջանները ադրբեջանցիներով բնակեցնելու և այդտեղից բնիկ հայերին վտարելու ուղղությամբ: Այսպես, արդեն փետրվարի վերջերին, Բաքվում հունվարյան հայկական ջարդերի, ռուսների ու խորհրդային բանակի ռազմիկների ջարդերի, խորհրդա-իրանական սահմանում ուժի ցուցադրման գործողությունների թարմ հետքերով ադրբեջանական իշխանությունները



կենտրոնի լուռ համաձայնությամբ կազմակերպեցին հայերի արտաքսում Ադրբեջանի Խանլարի շրջանի՝ ԼՂԻՄ-ին հարող Ազատ և Կամո գյուղերից:

Այդ լկտի արարքը զայրույթ և ատելություն առաջացրեց ինչպես ԼՂԻՄ-ում, այնպես էլ Հայաստանում: Մեր հանրապետության բնակչության լայն խավերում այնպիսի կարծիք ստեղծվեց, որ կենտրոնը զիջել է ադրբեջանական կողմի կոպիտ ուժային ճնշմանը, ԼՂԻՄ-ի և մերձավոր շրջանների հայ բնակչության ճակատագիրը ձեռնտու զենք դարձնելով Ադրբեջանը խաղաղեցնելու նպատակով: Հասկանալով հանրապետության հասարակական կարծիքում այդպիսի վիճակի լուրջ հետևանքները, ձգտելով կանխել այդ վտանգավոր պլանի իրականացումը, մենք տագնապ ազդարարեցինք: Բայց մեր ձայնը չլսեցին: Կենտրոնի թողտվության պայմաններում հայերը լրիվ վտարվեցին Կամոյից և Ազատից: Հենց այդ ժամանակ հատկապես բարձր հնչեց մեր ձայնն այն մասին, որ Մոսկվան հաշվի է առնում միայն կոպիտ ուժի գործադրումը և անտեսում է ազգային պրոբլեմների լուծման քաղաքակիրթ դեմոկրատական եղանակը:

Նշենք, որ այդպիսի կարծիքի համար որոշակի հող նախապատրաստվել էր արդեն Սումգայիթում հայերի կոտորածի հետևանքներով: Սակայն հենց Բաքվում հունվարյան հանցագործություններից և դրանց հետևած՝ Ղարաբաղի հայերի դեմ ադրբեջանական կողմի լայնածավալ հարձակումից հետո այդ վարկածը հանրապետությունում գրեթե ճանաչվեց բոլորի կողմից: Հենց դա էլ սնուցիչ միջավայր դարձավ ԼՂԻՄ-ում և Հայաստանում ներքաղաքական իրադրության շեշտակի սրման համար:

Այդ կարծիքը հերքելու, հանգստացնելու հանրապետության հասարակայնությանը, հնարավոր չէ, որովհետև Ղարաբաղում հայերի նկատմամբ ճնշումը վերջին ամիսներին ավելի է ուժեղանում: Ապրիլի սկզբներին Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի պլենումում Ադրբեջանի կոմունիստների ղեկավար Ա. Մութալիբովը բացահայտորեն կոչ արեց ադրբեջանականացնել ԼՂԻՄ-ը՝ ամենից առաջ իշխանության հիմնական օղակներում ադրբեջանական ներկայացուցչության արմատական գերազանցություն ձեռք բերելու միջոցով: Երկրորդ՝ ԼՂԻՄ-ը ադրբեջանցիներով բնակեցնելու միջոցով, որպեսզի փոփոխվի մարզի բնակչության ժողովրդագրական կազմը:

ԼՂԻՄ-ի շուրջն իրադրության սրման հաջորդ քայլը դարձավ Ադրբեջանի Գերագույն խորհրդի նախագահության ապրիլի 21-ի որոշումը ԼՂԻՄ-ի վարչատերիտորիալ բաժանման փոփոխությունների մասին: Այդ քայլը, որը բացահայտորեն նպատակամղված էր Լեռնային Ղարաբաղում ժողովրդագրական իրադրության փոփոխմանը, հայ ժողովրդին լարված վիճակի հասցրեց: Ոչ ոք նույնիսկ չէր կարող մտածել, թե այդչափ բացահայտ, լկտի ձևով կարող են ոտնահարվել ինքնավար կազմավորումների և տեղական ինքնավարության մարմինների իրավունքները երաշխավորվող օրենքները: **Չէ՞ որ ոչ վաղուց՝ ապրիլի 9-ին, ԽՍՀՄ Գերագույն խորհուրդն ընդունել էր օրենք «ԽՍՀՄ-ում տեղական ինքնավարության և տեղական տնտեսության ընդհանուր սկզբունքների մասին», որի չորրորդ բաժնի 28 հոդվածը երաշխավորում է տերիտորիայի զարգացման բնագավառում տեղական ինքնավարության մարմինների լիազորությունների ապահովումը: Այն պահանջում է «պարտադիր կարգով ժողովրդական դեպուտատների համապատասխան խորհուրդների հետ համաձայնեցնել այն միջոցառումները, որոնք կարող են հանգեցնել տերիտորիայի բնակչության շահերը շոշափող տնտեսական, ժողովրդագրական և այլ հետևանքների»:**

Սակայն Դուք, Միխայիլ Սերգեևիչ, որպես երկրի պրեզիդենտ, Ձեր վերաբերմունքը չդրսևորեցիք Ադրբեջանի Գերագույն խորհրդի նախագահության ապրիլի 21-ի ապօրինի որոշման նկատմամբ: Եվ դա այն դեպքում, երբ այն ակներևաբար չի համընկնում միութենական օրենսդրության պահանջներին...

Քաղաքական ճնշման այդ հակաօրինական քայլերին անմիջապես հետևեցին զինվորական սարսափեցման քայլերը: Ապրիլի 24-ին՝ 1915 թվականի հայկական եղեռնի զոհերի հիշատակի օրը, երբ պետք է նշվեր Արևմտյան Հայաստանի տարածքում օսմանական Թուրքիայի կողմից իրականացված եղեռնի 75 տարին, ԼՂԻՄ-ի արտակարգ դրության շրջանի զինվորական պարետությունը սգո արարողության մասնակիցների նկատմամբ հալածանքներ կիրառեց: Հաջորդ օրերին հալածանքները սիստեմատիկ բնույթ ստացան, վերածվելով ինքնավար մարզի հայ բնակչության դեմ զինվորական տեռորի նպատակասլաց տակտիկայի: Դժվար է հրաժարվել այն մտքից, որ այդ տեռորի նպատակն է հայ բնակչությանը ստիպել կամ հեռանալ մարզից, կամ համաձայնվել ԼՂԻՄ-ում ժողովրդագրական իրադրության փո-

փոխման ադրբեջանական իշխանությունների կողմից իրականացվող պլանին, մարզ, որի բնակչության 80 տոկոսն առայսօր կազմում են հայերը:

Մյուս կողմից ԽՄԿԿ Կենտկոմի օրգան «Պրավդա» թերթը մայիսի 17-ին հրապարակեց Ադրբեջանում իր սեփական թղթակցի լայնածավալ հարցազրույցը հանրապետության կոմկուսի առաջին քարտուղար Ա. Մութալիբովի հետ: Այդ հրապարակման մեջ, որը կրում է «Կայունացման քայլեր» բազմանշանակ խորագիրը, Ադրբեջանի կոմունիստների ղեկավարը, խոսելով ԼՂԻՄ-ի պրոբլեմի մասին, ուղղակի վկայակոչում է իր ելույթը Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի ապրիլյան պլենումում: Դա ի՞նչ է, եթե ոչ ԼՂԻՄ-ի դեմ ժողովրդագրական ագրեսիայի՝ հանրապետության կոմկուսի Կենտկոմի պլենումում ընդունված, իսկ այնուհետև Ադրբեջանի Գերագույն խորհրդի նախագահության որոշմամբ ամրապնդված դիրքորոշումների հրապարակումը «Պրավդայի» էջերում: Եվ այդ դիրքորոշման մեջ է Ա. Մութալիբովը տեսնում «կայունացման քայլերը»: Եվ «Պրավդան» այդ հարցում համաձայնվում է նրա հետ: Այսինքն, ԼՂԻՄ-ում իրադրության կայունացումը տեսնում է ինքնավար մարզում հայաբնակների կրճատման ճանապարհին:

Ակներև է, որ ԼՂԻՄ-ում կայունության պրոբլեմի այդպիսի «լուծումը» որոշակի քաղաքական-գաղափարախոսական հիմնավորման կարիք ուներ: Չէ՞ որ հայտնի է, թե աշխարհում ինչպիսի արձագանք է առաջացրել ԼՂԻՄ-ի ժողովրդի ինքնորոշման դեմոկրատական պայքարը: Քաղաքակիրթ մարդկության շրջանում ինչպիսի կարեկցություն է առաջացրել հայ ժողովրդի վերամիավորման մարդասիրական և իր էությամբ դեմոկրատական նպատակը: Այդ առթիվ կան նաև այնպիսի ծանրակշիռ փաստաթղթեր, ինչպիսիք են Միացյալ Նահանգների սենատի, Եվրոպական պառլամենտի և մի շարք այլ հեղինակավոր կազմակերպությունների որոշումները: Միացյալ Նահանգներ Ձեր այցի նախօրյակին անհրաժեշտ էր գտնել այն փաստի ճշմարտացի բացատրությունը, թե ինչու մինչև այժմ, ավելի քան երկու տարվա ընթացքում, մեր «իրավական» պետությունում ոտնահարվում է ազգի բնական, ոչ օտարացված իրավունքը՝ ինքնորոշման իրավունքը: Եվ ահա, բախտի բերմամբ, թե չարակամությամբ առիթ ստեղծվեց. մայիսի 27-ին տեղի ունեցավ ողբերգություն: Ողբերգություն, որից օգտվելով, երկրի պաշտոնական պրոպագանդան լույս աշխարհ հանեց հայկական տեռորիզմի պիտակը: Որպեսզի արատավորվեն մեր ժողովրդի դեմոկրատական շարժման լուսավոր գաղափարները, դրանց վրա ստվեր նետվի ամբողջ քաղաքակիրթ մարդկության առջև:

«Ժամանակ» ծրագիրը, կարծես դելֆիական պատգամախոս, ողբերգությունից մեկ օր առաջ հաղորդեց չարագուշակ կանխատեսումներ, որոնք զարմանալիորեն իրականացան տառացիորեն մի քանի ժամ հետո: Մի՞թե դա սոսկ երևակայության կամքով էր:

Ավելի քան երկու տարի է, ինչ մենք ապրում ենք անդադար ցեղասպանության, շրջափակման, ֆիզիկական ու բարոյական տեռորի, մասսայական ինֆորմացիայի միջոցների հարձակումների ու գրգռումների, երկրում հակահայկական տրամադրությունների բորբոքման պայմաններում: Եվ այդ ամենը՝ սարսափելի երկրաշարժից հետո, որը խլեց հազարավոր կյանքեր և անօթևան թողեց հանրապետության հարյուր հազարավոր բնակիչների: Գտնվեցին մարդիկ, որոնց հոգեվիճակը չդիմացավ անմարդկային պայմաններին, շրջափակման մեջ գտնվելուն, հարևանների անպատիժ ջարդարարության իրավիճակին, ազգային անպաշտպանության և նսեմացվածության զգացումին:

Ինչ գնով էլ լինի ինքնապաշտպանության միջոցներ ձեռք բերելու ձգտումը կարող է հասկանալ միայն այն մարդը, որը տեսել է Սումգայիթի, Բաքվի, Գանձակի զոհերը՝ մահացու ծեծված ծեր տղամարդկանց ու կանանց, ամբողջ կյանքում հաշմացած երեխաների, բռնաբարված կանանց, որոնք այլևս երբեք չեն կարող զգալ ամուսնության և մայրության բերկրանքը: Նրանք, ովքեր անմարդկային տանջանքների են մատնել այդ մարդկանց, կործանել են նաև մայիսի 27-ի ողբերգության զոհերի հոգիները: Բարոյապես այլանդակել են հազարավոր ու հազարավոր մարդկանց, որոնք այսուհետև չեն կարող հանգիստ ապրել այս աշխարհում: Եվ այսօր նրանք պահանջում են երաշխավորել ապրելու իրենց բնական իրավունքը: Այդ է պահանջում ԼՂԻՄ-ի ժողովուրդը իր ինքնորոշման անսահման ձգտման մեջ, որպես ստեղծված պայմաններում ֆիզիկական գոյության միակ միջոցի:

Մենք մայիսի 21-ին «Պրավդայում» հրապարակված «ԽՍՀՄ պրեզիդենտին զինծառայողների դիմումի» տեքստը գնահատում ենք որպես լավ կազմակերպված



կամպանիայի մի մասը, որի նպատակն է օրակարգից հանել ԼՂԻՄ-ի պրոբլեմը և ընդունել ԼՂԻՄ-ում ապարտեիդի ռեժիմի Ադրբեջանի հավակնությունները մինչև ինքնավար մարզից հայերին վերջնականապես վտարելը և այն ադրբեջանցիներով բնակեցնելը:

Մենք Ձեզ՝ որպես երկրի պրեզիդենտի, կոչ ենք անում վերջ տալ հայ ժողովրդի նկատմամբ ֆիզիկական և բարոյահոգեբանական տեռորի կամպանիային: Մենք պահանջում ենք բազմակողմանիորեն և օբյեկտիվորեն լուսաբանել մայիսի 27-ի ողբերգության պատճառները: Վճռականապես դատապարտելով հանցագործներին, որոնք խորհրդային բանակի մարտիկներից զավթում են մարտական զենքը, մենք բողոքում ենք տեռորիզմի մեջ նրանց մեղադրելու դեմ, մինչև որ հետաքննությունը չպարզի նրանց հանցագործությունների իսկական դրդապատճառները: Եվ, վերջապես, մենք հերթական անգամ հաստատակամորեն պահանջում ենք վերջ տալ հայ ժողովրդի տառապանքներին ԼՂԻՄ-ում, անհրաժեշտ պայմաններ ապահովել ինքնորոշման նրա բնական իրավունքի իրականացման համար:

**Հարգանքներով՝ ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատներ**
**ՍԵՐԳԵՅ ՀԱՄԲԱՐՁՈՒՄՅԱՆ**
**ԽՈՐԵՆ ԱԲՐԱՀԱՄՅԱՆ**
**ՖՐՈՒՆԶԵ ԴՈՎԼԱԹՅԱՆ**
**ԷԴԳԱՐ ՀՈՎՀԱՆՆԻՍՅԱՆ**
**ԷԴՎԱՐԴ ՄԻՐԶՈՅԱՆ**
**ՍՏԵՓԱՆ ՓԱՇՅԱՆ**
**ԳՐԻԳՈՐ ԽԱՆՋՅԱՆ**

## ԽՍՀՄ ՊՐԵԶԻԴԵՆՏ Մ. ԳՈՐԲԱՉՈՎԻՆ, ԱՄՆ-Ի ՊՐԵԶԻԴԵՆՏ Ջ. ԲՈՒՇԻՆ

Երկու մեծ տերությունների ղեկավարների ամեն մի հանդիպումից հետո աշխարհը պետք է ավելի լավը և ավելի արդարացի դառնա: Արդարության իրենց բաժինն են սպասում Լեռնային Ղարաբաղի բնակչությունը, ողջ հայ ժողովուրդը:

Լեռնային Ղարաբաղի բնակչության գործողությունների տրամաբանությունը պարզ է ու հասարակ. դա հավատարմությունն է ԽՍՀՄ-ում տեղի ունեցող դեմոկրատական վերափոխումների հարընթացներին, ազգային պրոբլեմների լուծման որոնումը, հանրաճանաչ իրավական նորմերի շրջանակներում՝ համամարդկային արժեքների առաջնության նշանաբանով:

Հարկ չենք համարում ձեր ուշադրությունը ծանրաբեռնել մանրամասներով այն կապակցությամբ, որ վերջին ժամանակներս Ղարաբաղի խնդիրը քանիցս քննարկվել է ԽՍՀՄ Գերագույն խորհրդի և ԱՄՆ-ի կոնգրեսի կողմից: Ներկայումս իրադարձությունների ողբերգական զարգացման ընթացքում նորից են ոտնահարվում Ղարաբաղի հայերի ազգային և մարդկային իրավունքները: Այստեղ արտակարգ դրության գոյության ընթացքում ադրբեջանական և փաստորեն նրանց ենթակա զինվորական իշխանությունների անհաբեկչության զոհն են դարձել բազմաթիվ խաղաղ բնակիչներ: Բարոյական ու ֆիզիկական ճնշման, իշխանության դեմոկրատական հաստատությունների հակաիրավական լուծարման, տնտեսական և լրատվական շրջափակման, ժողովրդագրական ագրեսիայի իրադրության մեջ, ԽՍՀՄ Գերագույն խորհրդի կարգադրություններին հակառակ, ադրբեջանացվում է հայկական ինքնավար մարզը: Ղարաբաղում զինվորական իշխանությունների բռնացումները չէին կարող չհարուցել միջադեպեր ինքնապաշտպանության հայկական կազմավորումների հետ, որոնք ստեղծվել են տարերայնորեն՝ ի պատասխան Սումգայիթում, Գանձակում (Կիրովաբադում), Բաքվում հայերի անպատիժ մնացած ջարդերի, Հայաստանի հանրապետության դեմ ուղղված ագրեսիայի, ԽՍՀՄ-ի պետական սահմանի ավերման և ադրբեջանցի գրոհայինների հոծխումբ սպառազինման: Այս ամենը չի կարող չարձագանքվել Հայաստանի իրադրության մեջ: 1990 թ. մայիսի 27-ին լարվածության

սրման մթնոլորտում Երևանում անիմաստ հեղված 23 տեղացի բնակիչների և մեկ զինծառայողի արյունը բռնության դատապարտման հետ մեկտեղ հարուցում է դառնության ու բողոքի զգացում ընդդեմ հայերի գործողություններին անհաբեկչական մղումներ վերագրելու զանգվածային լրատվության որոշ միջոցների փորձերի:

Ելնելով նրանից, որ Լեռնային Ղարաբաղի խնդիրը կրոնական կամ միջէթնիկական բնույթ չի կրում, այլ համապատասխանում է ձեր կողմից հռչակվող դեմոկրատական ազատությունների և ազգերի ինքնորոշման իրավունքի պաշտպանության քաղաքականությանը, կկամենայինք վստահություն հայտնել, որ դուք հնարավոր կգտնեք այդ խնդիրը քննարկելու մարդու իրավունքների հարցերի ծրարում:

Մենք հուսով ենք, որ մոլորակի երկու առաջատար պետությունների ղեկավարների շնորհիվ աշխարհում շոշափելիորեն հաստատված նոր մտածողությունը, որի կենարար կիրառումը մենք զգացինք հայոց երկրաշարժի օրերին, այժմ էլ կտա իր բարի պտուղները:

**Պաշտոնական և ոչ պաշտոնական հասարակական, քաղաքական կազմակերպությունների ներկայացուցիչների «Հայաստանի ազատ ամբիոնի» 1990 թ. մայիսի 30-ին Երևանում կայացած նիստի մասնակիցներ**

# ՄԵԾ ԲՐԻՏԱՆԻԱՅԻ ՎԱՐՉԱՊԵՏ ՏԻԿԻՆ ՄԱՐԳԱՐԵՏ ԹԵՏՉԵՐԻՆ

Մեծարգո վարչապետուհի:

Հայ մտավորականության անունից ողջունում ենք Ձեզ Հայոց բիբլիական հողի վրա և բերում մեր խորին շնորհակալությունները Լենինական այցելելու և մեր աղետյալ երկրին այդքան սրտացավորեն օգնություն ցուցաբերելու համար: Այն դպրոցը, որը այսօր բացեցիք Դուք և որը կրում է հայոց 1600-ամյա գրերի պաշտամունքը ունեցող լորդ Բայրոնի անունը, նույն այդ գրերով շարունակելու է հայ մանուկին հաղորդակից դարձնել բարուն, լույսին ու ստեղծագործ արարումին, այն ամենին, ինչ դարերով եղել է մեր ժողովրդի լինելիության կերպը: Ափսոս, որ վերջին երկու-երեք տարիները նորից տագնապալից եղան մեզ համար, և հայ ժողովուրդը, որն այնքան շատ մանուկներ ունի կնքված Համլետ անունով, նորից կանգնած է «լինել-չլինելու» երկընտրանքի առջև:

Այդ երկընտրանքը առանձնապես խորն է ապրում Հայաստանից կամայականորեն անջատված Արցախյան աշխարհը՝ Ղարաբաղը, որը տասնամյակներ շարունակ պայքարել է իր մայր հողին միանալու համար: Ղարաբաղյան շարժումը երբեք էլ էթնիկական-կրոնական բնույթ չի կրել, նրա առաջամարտիկները երբեք էլ արժանի չեն տեռորիստ պիտակին: Այն խորապես դեմոկրատական, ազգի և մարդու իրավունքները հետամտող շարժում է, միանգամայն համապատասխան Հելսինկիի պայմանագրերով վավերացված միջազգային համաձայնություններին:

Մեր թանկագին հյուր:

Գուցե մեր այս նամակը դուրս է ընդունված դիվանագիտական կանոնակարգի սահմաններից, սակայն մենք չենք կարող չասել Ձեզ, որ հատկապես այս օրերին Լեռնային Ղարաբաղում տիրում է օրհասական վիճակ: Օգտվելով հատուկ զինվորական դրության ընձեռած հնարավորություններից, որը զրկել է Ղարաբաղի խիզախ ժողովրդին դույզն ինչ դիմակայելու այնտեղ գործադրվող կամայականություններին, ադրբեջանական իշխանությունները անցել են հարձակման՝ Ղարաբաղը ծունկի բերելու և դեմոգրաֆիկ գրոհի միջոցով մարզը շուտափույթ ադրբեջանականացնելու համար: Օր-օրի սաստկացող վարչական, տնտեսական և ինֆորմացիոն շրջափակումը թաքցնում է աշխարհից այդ փոքրիկ, բայց հերոսական հողակտորի վրա նյութվող դավադրությունները, անլուր անօրինականություններն ու ռեպրեսիան: Այս պահին աշխարհում չկա ուրիշ մի անկյուն, որտեղ այդքան անողոքորեն ոտնահարվեն ազգի և մարդու իրավունքները, այդքան անպատիժ գործի բռնությունը, ինչպես Ղարաբաղում: Այս իրադրությունը անպատվաբեր է ոչ միայն վերակառուցում հռչակող երկրի, այլև մարդկության համար:

Բարձրացրեք Ձեր ձայնը ի պաշտպանություն մարդու և ազգի իրավունքների, ի պաշտպանություն բազմատառապ, իր թափած հին ու նոր արյունով նորից նոր սրբագործված Հայաստանի, ի պաշտպանություն բռնադատվող Ղարաբաղի: Այնտեղից, ինչպես երկրաշարժից փլատակված բետոնասալերի տակից, լսվում են օգնության կանչող աղաղակներ: Աշխարհը, որ այդքա՜ն լիասիրտ ձեռք մեկնեց մեզ 88 թվականի աղետավոր դեկտեմբերին, պետք է որ լսի նաև այդ աղաղակները:

**Խորին հարգանքներով՝**

**ՍԻԼՎԱ ԿԱՊՈՒՏԻԿՅԱՆ**

**Բանաստեղծուհի, Խորհրդային Միության և Հայկական Հանրապետության պետական մրցանակների դափնեկիր, Հայաստանի գիտությունների ակադեմիայի թղթակից անդամ**

**ՍԵՐՈ ԽԱՆԶԱԴՅԱՆ**

**Արձակագիր, սոցիալիստական աշխատանքի հերոս, ԽՍՀՄ ժողովրդական դեպուտատ**

*Սիլվա Կապուտիկյանի և Սերո Խանզադյանի այս դիմումը 1990 թ. հունիսի 10-ին, Լենինականում, լորդ Բայրոնի անվան դպրոցի բացման ժամանակ բանաստեղծուհին անձամբ հանձնել է Մեծ Բրիտանիայի վարչապետին:*

# ՀԱՂԹԱՀԱՐՈՒՄ ԵՆՔ ԴԺՎԱՐՈՒԹՅՈՒՆՆԵՐԸ

Խ. ԴՈՒՄԻԿՅԱՆ

ՀԱՅ ԺՈՂՈՎՐԴԻ ՀԻՇՈՂՈՒԹՅԱՆ ՄԵՋ 1988 ԹՎԱԿԱՆԸ ԿՄՆԱ որպես մեծագույն ողբերգության, տասնյակ հազարավոր անմեղ զոհերի, ավերածությունների, խեղված ճակատագրերի և միաժամանակ անկոտրում կամքի դրսևորման տարի: Տեղի ունեցավ հայերի սումգայիթյան ցեղասպանությունը, ապա դեկտեմբերի 7-ի՝ իր հետևանքներով ամենածանր երկրաշարժերից մեկը: Հազարավոր մարդիկ բռնագաղթվեցին Ադրբեջանից, հազարավորները տարերային աղետի պատճառով զրկվեցին օթևանից: Եվ նրանք ապաստան գտան մեր հանրապետության ու Միության տարբեր վայրերում: Սակայն այդ ամենը չթուլացրեց հայ ժողովրդի քաղաքական ակտիվությունը, արդար պայքարը հանուն գոյատևման, ազգային ինքնաճանաչման ու ինքնահաստատման:

Վերակառուցման արդի փուլում ոչ միայն մեր՝ Կալինինոյի շրջանում ու հանրապետությունում, այլև ամբողջ երկրում ստեղծվել է անսովոր, բարդություններով ու հակասություններով լեցուն իրավիճակ: Ուստի ներկա պահը չպետք է դիտել որպես զուտ հասարակական-քաղաքական կյանքի առանձին ձևախեղումների շտկման, տարիներով կուտակված արատների վերացման պրոցես: Այն մեր ժամանակակցի կյանքի պայմանների արմատական նորացման, սոցիալական արդարության հաստատման, դեմոկրատիայի խորացման, մասսաների ակտիվության բարձրացման, կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների աշխատանքների կատարելագործման անհրաժեշտ փուլ է:

Այս հոդվածում կուզեի անդրադառնալ երկու առանցքային պրոբլեմների: Առաջին, հանրագումարի բերել անցած մեկուկես տարում ավերիչ երկրաշարժի հետևանքների վերացման նպատակով շրջանի կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինների ծավալած գործունեությունը: Երկրորդ, ցույց տալ Ադրբեջանից բռնագաղթվածների կենսապայմանների բարելավման ասպարեզում մեր արածն ու անելիքները:

Թե ինչ նյութական և բարոյական վնաս պատճառեց երկրաշարժը հայ ժողովրդին, հայտնի է բոլորին: Այդ մասին կան պաշտոնական տվյալներ: Նյութական մեծ կորուստներ կրեցին նաև մեր շրջանի հանրային հատվածն ու անհատական տնտեսությունները: Ճիշտ է, զոհեր չեղան, սակայն խաթարումները զգալի էին: Բավական է նշել, որ մոտ 700 առանձնատուն 15 հազար քմ ընդհանուր մակերեսով, 400 պետական կոմունալ բնակարաններ խարխլվել էին և բնակության համար դարձել վտանգավոր: Մոտ 45 հազար քմ բնակտարածություն ամրացման ու նորոգման կարիք ուներ: Վթարային էին դարձել յոթ դպրոց, հինգ մանկապարտեզ, վեց մշակույթի տուն ու ակումբ, կուլտուր-կենցաղային և արտադրական այլ օբյեկտներ: Ագրարային հատվածը նույնպես զերծ չմնաց վնասներից. անօգտագործելի դարձան

ԴՈՒՄԻԿՅԱՆ ԽԱՉԻԿ ՀՈՎՍԵՓԻ— ՀԿԿ Կալինինոյի շրջկոմի առաջին քարտուղար, տեխնիկական գիտությունների թեկնածու



մի շարք գոմեր, արտադրական օբյեկտներ: Մի խոսքով, շրջանի կրած վնասի չափը հասավ 120 մլն ռուբլու, որից մոտ 50 մլն-ը՝ գյուղատնտեսությունում:

Ելնելով ստեղծված արտակարգ ծանր իրադրությունից՝ կուսշրջկոմը, շրջխորհրդի գործկոմի հետ համատեղ, մշակեց գործողության ծրագիր՝ երկրաշարժի պատճառած վնասները վերականգնելու, շրջանի տնտեսական ու սոցիալական վիճակը, բարոյահոգեբանական մթնոլորտը ըստ ամենայնի կարգավորելու համար: Այդ նպատակով աղետից անմիջապես հետո ստեղծվեց հատուկ շտաբ, որի կազմում ընդգրկվեցին կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինների, հասարակական կազմակերպությունների ներկայացուցիչներ: Այն կոորդինացնում էր ոչ միայն ներշրջանային հոգսերն ու գործերը, այլև փրկարարական ջոկատներ ուղարկում առավել տուժած բնակավայրերը, հանգանակություններ կազմակերպում աղետյալներին օգնելու նպատակով: Փրկարարական աշխատանքների օրերին ստեղծվեցին տասնյակ կամավորական ջոկատներ, որոնք աշխատում էին Լենինականի, Սպիտակի, Ստեփանավանի փլատակներում: Այդ օրերին մեր շրջանային կենտրոնական հիվանդանոցը վերածվել էր իսկական մարդասիրության ու գթասրտության յուրատեսակ կենտրոնի: Ստեղծվել էին բժշկական ութ արտագնա խմբեր, որոնք տուժածներին ու վիրավորներին առաջին բժշկական օգնություն էին ցույց տալիս ամենածանր տեղամասերում: Անհամեմատ ստվարացել էր դոնորների թիվը:

Դժվարին դրություն էր ստեղծվել էլեկտրաէներգիայի, գազի, ջրի մատակարարումը խափանվելու պատճառով: Ստեղծված իրավիճակը պահանջում էր ուժերի գերագույն լարում, նպատակաուղղվածություն: Եվ ընդամենը մի քանի օրվա ընթացքում հնարավոր եղավ լուծել այդ կենսական խնդիրները, ինչ-որ չափով նորմալացնել բնակչության կյանքի պայմանները:

Հույժ կենսական ու հրատապ խնդիր էր կորսվածի ու խաթարվածի վերականգնումը: Դրա լուծումը դարձավ շրջանի կուսակցական, խորհրդային ու տնտեսական մարմինների առաջնահերթ անելիքը: Նրանց միջամտությամբ ու ջանքերով էլ համեմատաբար սեղմ ժամանակահատվածում տարբեր նախագծային ու գիտահետազոտական հիմնարկություններ ուսումնասիրեցին բնակավայրերի տեղանքը, դրանց սեյսմադիմացկունության աստիճանը, կազմեցին կապիտալ շինարարության ու կառույցների վերականգնման նախագծային-նախահաշվային փաստաթղթերը: Այդ ամենից հետո կանխորոշեցինք ֆինանսավորմանն ու մատակարարումներին առնչվող շատ հարցերի լուծման ուղիներ: Սակայն արածը դեռևս դժվարությունների հաղթահարման սկիզբն էր: Հարկավոր էր որոշել կառուցվելիք օբյեկտների համար անհրաժեշտ շինարարական հզորություններ ստեղծելու, մեզ անշահախնդիր օգնության ձեռք մեկնած վրացական, լատվիական և կիրգիզական հանրապետություններից եկած շինարարներին աշխատելու և ապրելու պայմաններով ապահովելու, տեղի մարդկանց վերականգնման աշխատանքներում ներգրավելու հարցերը: Պակաս կարևոր չէին նաև տուժած ընտանիքներին ցույց տրվելիք նյութական օգնությունը, կորցրածի փոխհատուցումը և դրանց զուգահեռ շրջանի սոցիալական, տնտեսական ու քաղաքական կյանքը բնականոն հուն դնելու և բազմաթիվ այլ հարցեր: Հենց վերջիններս էլ լայնորեն ու գործարար մթնոլորտում քննարկվեցին շրջխորհրդի նստաշրջանում ու կուսշրջկոմի պլենումում և միջոցառումներ մշակվեցին երկրաշարժի հետևանքները, որքան հնարավոր է, կարճ ժամանակամիջոցում վերացնելու, տուժածներին օգնություն ցույց տալու համար:

Դժվարին այն օրերին մեզ համար օդի ու ջրի պես թանկ ու անհրաժեշտ, նաև ժամանակին էր եղբայրական հանրապետությունների օգնությունը: Վրացական ԽՍՀ պետշինը պատրաստակամություն հայտնեց կապիտալ ներդրումների և նյութատեխնիկական ռեսուրսների հաշվին շրջկենտրոնում կառուցել 55 հազար քմ բնակելի տարածություն, 1176 աշակերտական տեղով դպրոցական, 300 տեղով նախադպրոցական հիմնարկների, 250 մահճակալանոց հիվանդանոցի շենքեր, 100 տեղանոց հյուրանոց և այլ օբյեկտներ: Այդ նպատակով կազմակերպվեց «Վրացհայշին» շինարարական տրեստի շինվարչությունը, որն արդեն զգալի աշխատանք է կատարել:

Լատվիական ԽՍՀ-ի «Ագրոարդշինտրեստի» ծրագիրը հիմնականում ընդգրկում է գյուղական շինարարությունը: Լատիշ շինարարները պետք է շահագործման հանձնեն 90 առանձնատուն՝ շրջկենտրոնում, Կաթնառատ, Մեծավան գյուղերում: Նրանց ուժերով կկառուցվեն նաև 1600 գլխի համար գոմեր (Կալինինոյի պետտնտեսությունում, փորձարարական բազայում և Մեծավանի պետտնտեսությունում), ինչպես նաև

Նորաշեն, Լեռնահովիտ, Կաթնառատ, Պրիվոլնոյե, Մեդովկա գյուղերում՝ 350-ական աշակերտական տեղով դպրոցներ, Կալինինոյում՝ ֆիզկուլտ-առողջարարական համալիր, «Ագրոսերվիս» արտադրամիավորման վարչական շենքը, հացի փոեր՝ Լեռնահովիտ, Սարչապետ և Մեծավան գյուղերում:

Կիրգիզիայի շինարարները ջրագծեր են անցկացնում գյուղերում ու ֆերմաներում, օգնում ոռոգման ցանցի կարգավորմանը: Նրանք արդեն կատարել են 1,5 մլն ռուբլու աշխատանք:

Բացի այդ ամենից, պայմանավորվածություն կա հանրապետության վերադաս մարմինների, մինիստրությունների ու գերատեսչությունների, շինարարական կազմակերպությունների հետ՝ կառուցելու սոցիալական նշանակության մի շարք օբյեկտներ՝ կապի հանգույց, պիոներների պալատ, ավտոկայան, առևտրի կենտրոն, գյուղերում՝ կենցաղի տներ, կապի բաժանմունքներ, բուժկետեր: Դրանց զուգահեռ բոլոր բնակավայրերում կձեռնարկվեն ջրապահովման, գազիֆիկացման ու ճանապարհների ասֆալտապատման աշխատանքներ:

Սակայն մեր առջև ծագում են և դժվարություններ: Այսպես, նույնիսկ նախագծային ու նախահաշվային փաստաթղթեր ունեցող և ֆինանսավորված մի շարք կառույցներում անհնար է որևէ գործ ձեռնարկել շրջանի շինարարական կազմակերպությունների թույլ հզորության և շինանյութերի վատ մատակարարման պատճառով: Ուստի շրջանային կուսակցական, խորհրդային և տնտեսական մարմինները ձգտում են մեծացնել շինարարական կազմակերպությունների ու կոոպերատիվների հզորություններն այն հաշվով, որ մոտակա երկու-երեք տարում լիովին վերականգնըվեն խարխլված ու վթարային կառույցները, ժամանակին շահագործման հանձնվեն նոր օբյեկտները: Ընթացիկ տարում շրջանի շինարարական կազմակերպությունների թիվը կավելանա ևս մեկով՝ կգործի «Անդրկովկասնավթգազշին» շինմոնտաժային արտադրամիավորման տեղամասը: Մեծ ծավալի շինարարական ու վերականգնման աշխատանքներ կկատարեն մեր տեղական «Ագրոարդշին» № 12 շինմոնտաժային արտադրամիավորումը, շինարարական մյուս կազմակերպությունները: Մեծ հույսեր ենք կապում հանրապետության Մինիստրների խորհրդի 1989 թ. նոյեմբերի 29-ի որոշման հետ, համաձայն որի շրջանի ինը գյուղերում սոցիալական պրոբլեմները լուծելու նպատակով որպես շեֆ կազմակերպություններ են հաստատվել մայրաքաղաքի խոշոր ձեռնարկությունները՝ «Անդրկովկասգազշին» շինմոնտաժային, «Գարուն», «Ռելե», «Լույս», «Արարատ» գինու և «Հայհանքայինջուր», «Հայգարեջուր», «Տեխսպասարկում», հաշվիչ տեխնիկայի և ինֆորմատիկայի հայկական գիտական արտադրամիավորումները:

Այժմ կոնկրետ արածի մասին: «Վրացհայշին» տրեստը անցած տարի կատարեց երեք մլն 230 հազար ռուբլու շինմոնտաժային աշխատանք, շահագործման հանձնեց 1600 քմ բնակտարածություն: Նրանց կառուցած չորս հարկանի տներում արդեն բնակարանամուտ է նշել շրջկենտրոնի աշխատավորական 80 ընտանիք, այդքան էլ՝ առաջիկայում: «Լատագրոարդշին» № 33 շրջիկ մեքենայացված շարասյան (ՇՄՇ) կոլեկտիվը շահագործման է հանձնել 907 քմ բնակմակերես: Նրանց ուժերով շրջկենտրոնի մուտքի մոտ ծնունդ է առել մի գողտրիկ թաղամաս: Անցած տարի վատ չաշխատեց նաև № 12 շինմոնտաժային արտադրամիավորման կոլեկտիվը, որը կատարեց կապիտալ շինարարության տարեկան պլանը:

Զգալի գործ է արվել անհատական բնակարանային շինարարության, խարխլված տների վերականգնման ասպարեզում: Անհատական առանձնատներ կառուցել ցանկացող 866 ընտանիքների արդեն հողամաս է հատկացվել: Նրանց տրամադրվել է նաև երկու մլն 300 հազար ռուբլու երկարատև վարկ: Անցյալ տարվա համեմատությամբ չորսուկես անգամ ավելացել է շինանյութերի վաճառքը բնակչությանը: Պետական ապահովագրության մարմինները կորցրած ու վնասված նյութական արժեքների և շինությունների դիմաց բնակչությանը վճարել են 20,5 մլն ռուբլի: Շրջանի 35 հազար բնակիչներ միանվագ օգնություն են ստացել պետբյուջեից, 8.400 մարդ՝ հանրապետության ագրոարդի արհմիությունից: Տնտեսությունների երկարատև վարկերի 47 տոկոսը լիովին մարվել է, իսկ մնացած 2,4 միլիոնի մուծման ժամկետները երկարաձգվել են: Կրած վնասների դիմաց պետական ապահովագրական մարմինները շրջանի պետական ու կոլեկտիվ տնտեսություններին վճարել են ավելի քան 3,4 մլն ռուբլի: Իսկ հանրապետության պետագրոարդը վերականգնման ու նորոգման նպատակով նրանց հատկացրել է 1,2 մլն ռուբլի: Շրջանի համարյա բոլոր հիմնարկ-ձեռնարկություններն ու կազմակերպությունները, ինչպես նաև աշխատավորական կոլեկտիվների անդամները նմանօրինակ օգնություն են ստացել իրենց վերադաս մարմիններից, արհմիություններից: Իսկ ահա Միության հանրապետությունների և արտասահմանյան երկրների ցույց տված դրամական օգնությունը հասավ ավելի քան 20 մլն ռուբլու:



Թվարկել այն ամբողջ օգնությունը, ինչ մինչև այսօր ցույց է տրվել մեր շրջանին, անհնար է: Բայց միաժամանակ հարկ է նշել այն մեծ օժանդակությունը, որը ստացավ շրջանի ագրարային հատվածը: Այսպես, անցած տարվա սկզբներից Մոլդավիայի 20 անասնաբույժների ջանքերով կանխվեցին անասունների մի շարք հնարավոր հիվանդություններ, Լատվիայի 50 մեխանիզատորներ օգնեցին գյուղատնտեսական տեխնիկայի նորոգմանն ու դաշտային աշխատանքներին: Գարնանացանի համար Բելոռուսական և Լատվիական հանրապետություններից ստացվեց 3.000 տոննա կարտոֆիլի բարձրորակ սերմացու, ԳՖՀ-ից՝ 400 գլուխ տոհմային երինջ: Խորհրդային Միության տարբեր ռեգիոններից արժեքի կեսի չափով ստացվեց 1.450 գլուխ բարձր մթերատու ցեղի մատղաշ: Առաջին քայլերն են արվել արտասահմանյան երկրների հետ փոխշահավետ տնտեսական հարաբերությունների մեջ մտնելու ճանապարհին: Պայմանավորվածություն կա հոլանդացի կարտոֆիլագործների հետ՝ 200 հեկտար կարտոֆիլի ցանքադաշտ, ինչպես նաև տնտեսական ազատ գոտի ստեղծելու մասին:

Արդարության առջև չմեղանչելու համար ասենք, որ արվածը, սակայն, չի գոհացնում ո՛չ մեզ, ո՛չ էլ վնաս կրած քաղաքացիներին: Մինչև օրս որոշված չէ բնակֆոնդի (պետական տների) ամրացման ու վերականգնման հարցը, առ այսօր ստացվել է հանրապետության Մինիստրների խորհրդի կողմից շրջանին հատկացված շինանյութերի ֆոնդի ընդամենը մեկ երրորդ մասը: Բարձիթողի վիճակում է նաև բնակչությանը վառելիքով ապահովելու գործը: Պետք է խոստովանել, որ նշված թերացումները ոչ միայն ադրբեջանցի ազգայնամոլների կողմից կիրառվող շրջափակման, այլև շրջանի սպասարկման ոլորտի կազմակերպությունների ու նրանց ղեկավարների անձեռներեցության ու անտարբերության հետևանք են: Անփութություն ու դանդաղկոտություն են հանդես բերում գործող շինարարական կոոպերատիվները, ինչպես նաև «Հայկենցաղշին» տնտհաշվարկային տեղամասը: Նրանք չեն ընդլայնում իրենց սպասարկման ոլորտը, չեն բարելավում աշխատանքի որակն ու կուլտուրան: Այս ամենը, իհարկե, առաջացնում է բնակչության արդարացի դժգոհությունն ու բողոքը:

Անտարակույս, նշված պրոբլեմները ներկա բարդությունը չէին ունենա, եթե շրջխորհրդի գործկոմը, գյուղական տեղական խորհուրդները, կապիտալ շինարարության բաժինը, սպասարկման ոլորտի հիմնարկություններն ու կազմակերպությունները անհրաժեշտ հետևություն անեին կատարվածից, եղած հնարավորություններն ու ռեզերվները նպատակամղեին երկրաշարժի հետևանքների վերացման, մարդկանց օրավուր աճող պահանջների բավարարման գործին:

Մեր շրջանի մարդիկ, ինչ խոսք, երախտագիտությամբ են ընդունում Վրաստանի, Լատվիայի, Կիրգիզիայի շինարարների անշահախնդիր օգնությունը, նրանց մարդասիրական վերաբերմունքը: Եվ մեր բարոյական ու մարդկային պարտքն է օժանդակել նրանց՝ ծրագրվածը իրականացնելու համար: Եվ առաջին իսկ օրերից կուսշրջկոմն ու շրջխորհրդի գործկոմը հոգատարությամբ շրջապատեցին օգնության եկած մեր բարեկամներին: Վրացի և լատվիացի շինարարների մոտ ստեղծվել են ժամանակավոր սկզբնական կուսկազմակերպություններ: Նրանց ազատ ժամանակը, ակտիվ հանգիստը հետաքրքրական ու բովանդակալից դարձնելու նպատակով զգալի գործ է արվում: Համերգներով հանդես են եկել Հայաստանի պետական կամերային, «Էրեբունի» վոկալ-գործիքային, գուսանական երգի համույթները, Մոլդավական ԽՍՀ վաստակավոր արտիստուհի Մարինա Լուկաչը, Աշտարակի կուլտուրայի բաժնի լարախաղացների խումբն ու ժողգործիքների համույթը, ինչպես նաև մեր շրջանի գեղարվեստական ինքնագործունեության խմբերը: Շինարարների համար ստեղծվել են նաև սոցիալ-կենցաղային հարմարավետ պայմաններ: Արդեն գործում են հասարակական սննդի նորաստեղծ օբյեկտները, բուժկետերը, բաղնիքը:

Օգնությունն, իհարկե, լավ է, սակայն հույսը միայն դրա հետ կապելու, չհամախմբվելով ու ինչպես հարկն է սեփական կարող ուժերը չօգտագործելու պրակտիկան հղի է զանազան բարդ ու տհաճ հետևանքներով: Լուրջ մտահոգության տեղիք է տալիս այն փաստը, որ ինչպես շրջանային ու տեղական խորհուրդների գործկոմները, այնպես էլ տնտեսական ղեկավարներն ու կուսկազմակերպությունները դեռևս կողմնակի դիտողի տպավորություն են թողնում հատկապես աշխատունակ բնակչությանը ժողովրդական տնտեսության բնագավառում ներգրավելու, նրանց մասնագիտական մակարդակը բարձրացնելու գործում: Վերջին տվյալներով մոտ վեց հազար մարդ ապահովված չէ մշտական աշխատանքով, շատերը բոլորովին էլ չեն աշխատում: Եվ սա այն դեպքում, երբ ինչպես տեղական, այնպես էլ օգնության եկած շինարարական կազմակերպությունները հարյուրավոր բանվորների ու մասնագետների կարիք ունեն:

Աշխատանքային ռեսուրսների չմտածված, անհեռատես տեղաբաշխումը հասցրել է նրան, որ տարեկան միջին հաշվով 4—5 հազար տեղացի որակյալ շինարարներ մեկնում են արտագնա աշխատանքի: Այս փաստը կապել զուտ բարձր վարձաչափի հետ, սխալ կլինի: Տեղերում էլ լավ աշխատողը վարձատրվում է այնքան, որքան ուրիշների դռները բախող շատ-շատերը: Ըստ էության, պատճառն այն է, որ ինչպես կուսակցական, այնպես էլ խորհրդային, տնտեսական մարմիններն ու հասարակական կազմակերպությունները դեռևս գործողության հստակ ծրագիր չունեն այս գործը կարգավորելու համար: Պիտի խոստովանել, որ եթե անհրաժեշտ սրտացավություն հանդես բերեինք մարդկանց աշխատանքի, կենցաղի, հանգստի պայմանների բարելավման, մասնագիտական մակարդակի բարձրացման, կոոպերատիվ շարժման շրջանակների ընդլայնման, նոր աշխատատեղերի ստեղծման նկատմամբ, ապա ոչ միայն արտագնա աշխատանքի մեկնողներին, այլև շատ երիտասարդների ու աշխատանքով չապահովվածների տեղերում կընդգրկեինք հանրային արտադրության մեջ:

Շրջանի առջև ծառացած, ինչպես ասացի, մյուս կարևոր պրոբլեմը, որն իր բնույթով ու բազում դժվարություններով չի զիջում բնական աղետին, մեր շրջանում ապաստանած Ադրբեջանից բռնագաղթվածների համար նորմալ կենսապայմանների ստեղծումն է: Վերջին տվյալներով նորաբնակների թիվը մեզ մոտ հասնում է ավելի քան 6.100 մարդու կամ 1.800 ընտանիքի: Ընդ որում, մշտական գրանցում ունի 3.631 մարդ (922 ընտանիք), ժամանակավոր գրանցում՝ 487 մարդ (129 ընտանիք): Բռնագաղթված 1.159 ընտանիք կամ եկածների մոտ 64 տոկոսը բնակարանային հարցը լուծել է փոխանակման միջոցով, 376-ը՝ տեղավորվել տնտեսություններից գնած առանձնատներում: Այսօր 1820 մարդ կամ աշխատունակ վերաբնակների 67 տոկոսն ընդգրկված է շրջանի տարբեր հիմնարկ-ձեռնարկություններում ու կազմակերպություններում: Նախկին ադրբեջանական դպրոցների փոխարեն բացվել են նոր կրթօջախներ՝ հայերեն և ռուսերեն բաժիններով: Ավարտին է մոտենում գյուղերի վերանվանման կամպանիան: Շուտով համապատասխան որոշումներ կներկայացվեն Հայկական ԽՍՀ Գերագույն խորհրդի նախագահության հաստատմանը:

Շրջխորհրդի գործկոմին առընթեր ստեղծվել է հատուկ հանձնաժողով, որը զբաղվում է Ադրբեջանի ղեկավար մարմինների կողմից աշխատանքից բռնի ազատված ու արտաքսված բանվոր-ծառայողներին ու կոլտնտեսականներին երեք ամսվա աշխատավարձի չափով միանվագ օգնություն ցույց տալու գործով: Վերը նշված թվերից ու փաստերից պարզ երևում է, թե ինչ աշխատանք են տարել և ինչ խնդիրներ ունեն լուծելու շրջանի կուսակցական, խորհրդային, տնտեսական մարմինները, հասարակական կազմակերպությունները՝ ներգաղթածների կյանքի պայմանները բարեփոխելու, առօրյան բովանդակալից դարձնելու և նրանց հայրենի հողի ու ջրի հետ կապելու համար:

Ամենահրատապը, թերևս, բնակարանային պրոբլեմն է: Ավելի քան 250 ընտանիք անորոշության մեջ է, երբ շրջանում նույնքան առանձնատներ դեռևս բնակեցված չեն: Տեղական խորհուրդների գործկոմների դանդաղկոտությամբ ու անհեռատեսությամբ պիտի բացատրել, որ մինչև օրս մոտ 2.000 մարդ չունի մշտական կամ ժամանակավոր գրանցում: Չի լուծված նաև նրանց հանրօգուտ աշխա-



տանքի մեջ ներգրավելու խնդիրը: Բանն այն է, որ շրջան եկած աշխատուժի զգալի մասը նախկին քաղաքաբնակներ են, որոնք հիմնականում աշխատել ու հմտացել են արդյունաբերության մեջ, սպասարկման ոլորտում և քաղաքին բնորոշ այլ օբյեկտներում: Իսկ մեզ այսօր պետք են գյուղատնտեսության բնագավառի աշխատողներ՝ մեխանիզատորներ, դաշտավարներ ու անասնապահներ: Ուրեմն վերամասնագիտացման գործընթաց պիտի տեղի ունենա: Անհրաժեշտություն է առաջացել երեկվա բանվորին ու մասնագետին նախապատրաստել՝ զբաղվելու հողագործությամբ ու անասնապահությամբ: Իսկ դա, ինչ խոսք, կապված է դժվարությունների հետ: Բայց այլ երկընտրանք չկա. պետք է շարունակել սկսած գործը այն հաշվով, որ էթնիկական կազմը լիովին կամ մասամբ փոխած գյուղերում ու տնտեսություններում մոտ ապագայում լուծվի կադրերի հարցը, հաստատուն նախադրյալներ ստեղծվեն բնակավայրերի սոցիալ-տնտեսական պրոբլեմները տեղի ուժերով լուծելու համար:

Լուրջ դժվարություններ կան վերաբնակների կենսական պահանջների բավարարման գործում: Նկատի ունեմ առևտրի կազմակերպումը, կենցաղսպասարկումը, ճանապարհաշինությունը, փողոցների բարեկարգումը, բնական գազով, ջրով, հեռուստակապով ապահովումը և այլն: Եվ օրինաչափ է, որ կուսշրջկոմի, շրջխորհրդի գործկոմի, մյուս մարմինների հասցեով ստացված նամակներում, ինչպես նաև բնակավայրերում ու աշխատավորական կոլեկտիվներում հանդիպումների ընթացքում մարդիկ արդարացիորեն բողոքում են սպասարկման ոլորտի, ժողկրթության, կուլտուրայի, շինարարության, սոցիալական հարցերով զբաղվող այլ հիմնարկությունների և, առաջին հերթին, նրանց ղեկավարների կողմից բյուրոկրատական քաշքշուկների, անբարեխիղճ աշխատանքի, անմարդասիրական վերաբերմունքի դեմ: Եվ, իրոք, մինչև ե՞րբ կարելի է հանդուրժել, երբ առևտրի օբյեկտներում օրեցօր նվազում է նույնիսկ առաջին անհրաժեշտության ապրանքների տեսականին, էլ չենք խոսում դրանց ձեռքբերման հետ կապված դժվարությունների ու պայմանների մասին: Կամ ի՞նչ արդարացման մասին խոսք կարող է լինել, երբ բնակավայրերի մեծ մասը փաստորեն զրկված է խմելու ջրից, դպրոցների որոշ, իսկ մշակույթի օջախների մեծ մասը չեն ջեռուցվում, ապահովված չեն մասնագետներով, դասագրքերով, գրենական պիտույքներով, տեխնիկական միջոցներով: Խափանումներով են գործում էլեկտրամատակարարումը, փոստն ու հեռախոսակապը, անբարեկարգ ու հակասանիտարական վիճակում են ինչպես շրջկենտրոնը, այնպես էլ մյուս 23 բնակավայրերը, դանդաղ է ընթանում մի շարք գյուղերի շրջկենտրոնի հետ կապող ճանապարհների բարեկարգման ու ասֆալտապատման գործը, չի կարգավորված ինչպես մարդատար, այնպես էլ բեռնատար տրանսպորտի ռիթմիկ աշխատանքը, շատ դանդաղ են գազիֆիկացվում գյուղերը, չեն ընդլայնվում կենցաղսպասարկման ծառայությունների շրջանակները, ցածր է սպասարկման կուլտուրան:

Այս խնդիրները հատուկ քննարկման առարկա դարձան կուսշրջկոմի վերջերս տեղի ունեցած պլենումում: Պլենումը պահանջեց շրջկոոպի, ոռոգման և ջրարբիացման համակարգերի վարչության, շրջժողկրթության, կուլտուրայի բաժինների, կապի հանգույցի, կոմունալ ձեռնարկությունների և բարեկարգման, կոմբինատի, ավտոճանապարհների շինարարության ու շահագործման տեղամասի, ավտոձեռնարկության, գազի գրասենյակի, կենցաղսպասարկման արտադրական վարչության կոմունիստ ղեկավարներից ու կուսակցական կազմակերպություններից՝ գործուն միջոցներ ձեռնարկել շրջանում, հատկապես վերաբնակեցված գյուղերում կուտակված սոցիալական պրոբլեմները լուծելու համար:

Ուսումնասիրությունները ցույց են տալիս, որ վերաբնակների, և ոչ միայն նրանց, դժգոհությունների ու բողոքների շարժառիթը շրջանային մարմինների, առաջին հերթին, շրջխորհրդի գործկոմի և նրա տեղական օղակների անհամաձայնեցված, ինչ-որ տեղ նաև ոչ օպերատիվ գործունեության հետևանք է: Ասածս հիմնավորեմ փաստերով: Թե՛ տեղացիները, թե՛ նորաբնակները հավաստի ինֆորմացիա չունեն շրջանի սոցիալական զարգացման, վերականգնողական աշխատանքների ընթացքի մասին: Ինչպես հարկն է, չի ուսումնասիրվել ու կարգավորվել ազատ աշխատատեղերի հարցը, չեն պարզվել առկա մասնագետների թիվը, պահանջը, նրանց տեղավորման հեռանկարը: Անուշադրության է մատնված վիճակագրության գործը. որևէ թվի կամ փաստի տեղեկանալու համար հաճախ օրերի պրպտումներ են պետք: Սրանք թվացյալ մանրուքներ չեն, այլ կարևորագույն միջոցներ՝ շրջանի ներքին ռեզերվներն ու

հնարավորությունները ուսումնասիրելու, ըստ այնմ էլ դրանք գործադրելու համար, առավել ևս այսօր, երբ տնտհաշվարկի, ինքնաֆինանսավորման ու ինքնածախսածածկման անցնելը, ինչպես ասում են, սարերի հետևում չէ:

Վերաբնակների հետ տարվող աշխատանքի կարևորագույն խնդիրներից են շրջանի հասարակական-քաղաքական կյանքի մեջ նրանց ընդգրկելը, ազգային լեզվի, մշակույթի, պատմության, սովորույթների հետ մերձեցնելը: Փաստորեն այն պետք է կրի վերածնող բնույթ: Անցած մեկ տարում այս ասպարեզում զգալի գործ է արվել. նրանց բնակության վայրերում ստեղծվել են ութ կուսակցական, 13 կոմերիտական, հինգ արհմիութենական կազմակերպություններ, բացվել է վեց հանրակրթական դպրոց, որտեղ ուսուցումը հիմնականում տարվում է հայոց լեզվով, ստեղծվել են գեղարվեստական ինքնագործունեության խմբեր ու սիրողական ակումբներ, տասնյակ երեխաներ ընդգրկվել են երաժշտական ու գեղարվեստի դպրոցներում:

Արվածը, սակայն, մեզ չի գոհացնում ու ինքնահանգստացման տեղիք չի տալիս: Սա այն գործն է, որը ամենօրյա քրտնաջան ու նպատակասլաց աշխատանք է պահանջում: Հարկավոր է նաև կազմակերպել հայոց լեզվի դասավանդումը (հասարակական հիմունքներով) Ադրբեջանից եկած պատանիների ու աղջիկների, ինչպես նաև բոլոր ցանկացողների համար, որոնք ճակատագրի բերումով հնարավորություն չեն ունեցել տիրապետելու մայրենի լեզվին: Այս շնորհակալ գործում իրենց ներդրումն են անում կուսակցական, կոմերիտական կազմակերպությունները, ինչպես նաև ժողկրթբաժնի, հանրակրթական դպրոցների ղեկավարներն ու մանկավարժական կոլեկտիվները: Դրան ակտիվորեն մասնակցում է շրջանային «Գիտելիք» ընկերությունը՝ մայրենի լեզվով հետաքրքիր դասախոսություններ, «կլոր սեղաններ» և այլ միջոցառումներ կազմակերպելով:

Ադրբեջանից բռնագաղթված հայերով վերաբնակեցված գյուղերի կազմավորման գործընթացը շարունակվում է: Մարդկանց ներհոսքն ու արտահոսքը դեռ կարգավորված չեն: Մի մասը գալիս է բնակվելու հաստատ միտումով, մյուսները՝ ժամանակավոր: Եվ դա բնական է: Իսկ ո՞վ չի ուզում ապրել այն վայրերում, որտեղ ստեղծված են աշխատելու և ապրելու ավելի լավ պայմաններ: Ահա այստեղ է, որ պիտի երևան մեր շրջանի կուսակցական, խորհրդային ու տնտեսական մարմինների, առաջին հերթին, նրանց ղեկավարների ճկուն քաղաքականությունը, մարդասիրական վերաբերմունքը՝ ինչ-որ տեղ քաոսային թվացող այդ գործընթացներին ուղղություն տալու և դրանք կարգավորելու գործում:

Զանտեսելով արվածը՝ միաժամանակ հարկ է նշել, որ կուտակված պրոբլեմների հաղթահարման գործում դեռևս շատ անելիքներ ունեն ինչպես սկզբնական կուսակցական, այնպես էլ նրանց վերահսկողությամբ գործող հասարակական կազմակերպությունները: Նրանց որոշ մասը հաճախ աչքաթող է անում կենսական նշանակության խնդիրների լուծումը, հաշվի չի առնում մարդկանց կարծիքը, ընթացք չի տալիս բարձրացրած շատ օբյեկտիվ դիտողությունների ու առաջարկությունների: Իսկ դա իր հերթին հանգեցնում է կուսակցության հեղինակության նվազմանը, նրա նկատմամբ հավատի անկմանը:

Ի՞նչ հեղինակության մասին կարող է խոսք լինել, երբ ավերիչ երկրաշարժից ու մասսայական միգրացիայից էապես չտուժած առանձին տնտեսություններ նույնիսկ զիջում են նվաճած դիրքերը, նրանց ղեկավարները վատ են զբաղվում աշխատավորների կուլտուր-կենցաղային կարիքների բարելավմամբ, իսկ առանձին կուսկազմակերպությունների բյուրոներ ու նրանց քարտուղարներ շրջանցում են այդ փաստերը՝ վախենալով տնտեսական ղեկավարների «աչքից ընկնելուց»: Ինչպես նշված է ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի պլատֆորմի նախագծում, կուսկազմակերպությունը իր դիրքերը կարող է ամրապնդել, դերը բարձրացնել միայն այն դեպքում, երբ կարողանա անկաշկանդ երկխոսության միջոցով պարզել հասարակության, տվյալ աշխատավորական կոլեկտիվի կարծիքը և իր վերաբերմունքը ցույց տալ դրա նկատմամբ: Ժամանակն է, որ նյութական արտադրության և սպասարկման ոլորտի կուսկազմակերպությունները զգան ժամանակի շունչը և, որքան հնարավոր է, շուտ թոթափեն տնտեսական առանձին ղեկավարների կցորդը կոչվելու ոչ հաճելի դերը:

Առջևում խոշորագույն քաղաքական իրադարձություն է՝ ԽՄԿԿ հերթական XXVIII համագումարը, որի ընդունելիք որոշումների հետ կոմունիստները մեծ հույսեր են կապում: Հենց այստեղ է, որ պետք է երևա մեր շրջանի կոմունիստների,



կոմերիտականների, ողջ ազգաբնակչության դիրքորոշումը վերակառուցման, հասարակական կյանքի դեմոկրատացման ու նորացման գործում:

Իրոք, վերակառուցումը նորագնացի պես է. առջևում դեռ շատ արգելքներ պիտի հաղթահարել, անդուլ պայքար ծավալել բյուրոկրատիզմի, երկրի, ազգի բարոյական նորմերը, արժեքները ոտնահարողների ու արատավորողների դեմ: Իսկ դրա համար անհրաժեշտ է ստեղծել ու ամրապնդել տնտեսական ու սոցիալական ամուր բազա, որը մեր ժամանակակցին ազատ հնարավորություն կտա դրսևորելու իր ստեղծարար կարողությունները: Եվ այդ հայրենաշահ գործում իրենց ավանդը կներդնեն նաև մեր շրջանի կուսկազմակերպությունները, աշխատավորական կոլեկտիվները:

Այսօր երկրաշարժի հետևանքների վերացումն ու Ադրբեջանից բռնագաղթված մեր հայրենակիցների նորմալ կենսապայմանների ապահովումը, նրանց հանրօգուտ աշխատանքում ներգրավելը մնում են մեր լուրջ պրոբլեմները, որոնց հաջող լուծումը շրջանի կոմունիստների, աշխատավորական կոլեկտիվների պատվի գործն է: Պակաս կարևոր խնդիր չէ նաև ագրարային հատվածի արմատական վերակառուցումը: Այս բնագավառում շատ-շատ են մեր անելիքները: Հարկավոր է լայնորեն ներդնել ու արմատավորել տնտեսավարման, աշխատանքի կազմակերպման նոր եղանակները, ստեղծել բոլոր նախադրյալները բուսաբուծական և անասնապահական մթերքների արտադրությունը և վաճառքը ավելացնելու համար: Այս բոլոր գործերում արտադրության ոլորտում աշխատող կոմունիստները պետք է լավ օրինակ ծառայեն, նպաստեն կուսկազմակերպությունների դերի ու ակտիվության բարձրացմանը, նախաձեռնության զարգացմանը: Այս և համանման խնդիրներ են այսօր արծարծվում ԽՄԿԿ XXVIII համագումարի առթիվ Կենտկոմի, կուսակցության կանոնադրության նախագծերի քննարկումների ընթացքում: Մեր կոմունիստները, հաղթահարելով ծագած դժվարությունները, ապրում են կուսակցության հեղինակության վերականգնման ու բարձրացման մտահոգությամբ:

# ԵՎ ՔԱՂԱՔԸ ԿՀԱՌՆԻ ՆՈՐԻՑ

## Ա. ՍԱՔԱՆՅԱՆ

### ՆԱԽԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

ՄԱՐԴԿԱՅԻՆ պայծառ միտքն ու անխոնջ ձեռքը Ստեփանավանը կերտել էին բազում տարիների ընթացքում, անկոտրում կամքով ու համառ ջանքերով։ Սակայն 1988-ի դեկտեմբերյան մեծ արհավիրքը վայրկյանների ընթացքում ի չիք դարձրեց տարիների ազնիվ տքնանքի արգասիքը, խաթարեց բնականոն կյանքը։ Տարերային աղետն իր սև կնիքը դրեց ամենուրեք, ամեն ինչի վրա։ Եվ հոգսաշատ օրեր սկսվեցին շրջանային ու քաղաքային կուսակցական, խորհրդային ու տնտեսական մարմինների, աշխատանքային կոլեկտիվների համար...

Հոգսերի հոգսը Ստեփանավան քաղաքի ու գյուղական բնակավայրերի վերականգնումն էր. ինչպե՞ս և ինչպիսի՞ ժամկետներում իրականացնել այն, մարդկանց ապահովել կացարանով ու աշխատանքով, ստեղծել կենսապահովման տանելի պայմաններ։ Դրանք բարդ ու դժվարին պրոբլեմներ էին, որոնց լուծումը պահանջում էր անսպառ եռանդ ու ջանքեր, խելամիտ մոտեցումներ, ձեռնարկվող գործի խորիմացություն, մարդկանց սրտերը տանող ուղիներ գտնելու, նրանց կազմակերպելու կարողություն և ունակություն... Չէ՞ որ քիչ չէ. երկրաշարժի պատճառած վնասը քաղաքում հասնում է ավելի քան 400 միլիոն ռուբլու։ Այստեղից էլ՝ վերականգնողական աշխատանքի բարդություններն ու դժվարությունները։ Եվ առաջին հերթին հարկ էր կազմել Ստեփանավանի գլխավոր հատակագիծն ու պահանջվող կառույցների նախագիծ-նախահաշիվները...

### ՔԱՂԱՔԸ ՆԱԽԱԳԾԵՐՈՒՄ

Այո՛, Ստեփանավանի գլխավոր հատակագծի կազմումը հրատապ ու հույժ անհրաժեշտություն էր. ի՞նչ և ինչպե՞ս կառուցել, հարկավոր էր զուգահեռաբար և, որքան հնարավոր է, կարճ ժամանակահատվածում պատրաստել և՛ գլխավոր հատակագիծը, և՛ քաղաքի կառուցապատման ու ծավալային լուծումների նախագծերը։ Առաջինը վստահվեց «Հայպետնախագիծ» նախագծային ինստիտուտի՝ Լևոն Մխիթարյանի ղեկավարած քաղաքաշինության բաժնին, երկրորդը՝ Ռուբեն Հասրաթյանի գլխավորած ճարտարապետական երրորդ արվեստանոցին։ Ստեփանավանցիները լուրջ հույսեր էին կապում փորձառու ճարտարապետների հետ, ապավինում նրանց իմացությանը...

... Զրույցը ճարտարապետների հետ սրտաբաց ու անկաշկանդ է, սիրով են պատասխանում իմ հարցերին, բավարարում հետաքրքրությունս։ Առաջին իսկ պահից զգում ես, որ շահագրգիռ վերաբերմունք ունեն Ստեփանավանի վաղվա օրվա հանդեպ, ջանում են ամեն ինչ անել լավ, տեղը-տեղին, քաղաքաշինության արդի պահանջներին համապատասխան։

Լևոն Մխիթարյանի խումբը, որում ընդգրկված են 13 ճարտարապետ, ինը տնտեսագետ, յոթ ինժեներ և որին օգնում են Մոսկվայի քաղաքաշինության կենտրոնի գիտահետազոտական ինստիտուտի ճարտարապետները, պարզապես քուն ու դադար չուներ։ Մարդիկ չորս ամիս, գրեթե առանց հանգստի, օրական 15 ժամ տքնում էին գծագրերի վրա և գործը գլուխ բերեցին հաջողությամբ։ Նույնպիսիք էին նաև Ռուբեն Հասրաթյանի խմբի ուսերին ընկած հոգսերը։ Եվ գլխավոր հատակագիծը, կառուցապատման ու ծավալային լուծումների նախագծերը արժանացան մասնագետների, Ստեփանավանի ղեկավարների հավանությանը, հաստատվեցին Հայաստանի կառավարության կողմից...

Ու հիմա, երբ լարված օրերը մնացել են հետևում, ու ճարտարապետներն էլ, իրենց արածից գոհ, հանգիստ շունչ են քաշում, խոսում են ոգևորված, ներշնչանքով։ Իմ ուշադրությունը հրավիրելով գլխավոր հատակագծին՝ Լևոն Մխիթարյանը բացատրում է. «Ստեփանավան քաղաքը ըստ գլխավոր հատակագծի, բաղկացած է երկու բնակելի զանգվածից, հին՝ աջափնյա և նոր՝ ձախափնյա, որոնք իրար հետ կկապվեն խոշոր տրանսպորտային-հետիոտն և երեք

---

*ՍԱՔԱՆՅԱՆ ԱՐՏԱՎԱԶԴ ՄԱԹԵՎՈՍԻ — «Լենինյան ուղիով» ամսագրի բաժնի վարիչ, խմբագրական կոլեգիայի անդամ։*



հետիոտն կամուրջներով։ Նրանց միջև՝ հյուսիսից հարավ, Ձորագետի ձախափնյա բլուրներից մինչև աջափնյա անտառի փեշերը, մինչև կուրորտային գոտի, կձգվի հորինվածքային ուղղահայաց փողոց-ճեմուղի։ Աջափնյա զանգվածում կլինի երկու բնակելի թաղամաս, մեկի կենտրոնը կհամընկնի հին կենտրոնի հետ, մյուսը կստեղծվի նախկին հիվանդանոցի տարածքում։ Ձախափնյա զանգվածը կունենա պետական բնակելի շենքերով չորս և անհատական կառույցներով մեկ թաղամաս։ Դրանց կենտրոնները միմյանց հետ կկապվեն հետիոտն փողոցներով, իսկ հիմնական կենտրոնի հետ՝ մեկ բուլվարով, որը երկու կողմից ամբողջ երկարությամբ կերիզեն սպասարկման տարաբնույթ օբյեկտներ։ Արդյունաբերական ձեռնարկությունները, որոնք անվնաս են, կտեղադրվեն բնակելի թաղամասերի հարևանությամբ, որպեսզի բացառվեն բնակչության զանգվածային շարժերը։ Բեռնունակ հիմնարկ-ձեռնարկությունները կտեղավորվեն քաղաքից հեռու, տրանզիտային ճանապարհի եզրին»։ Գլխավոր հատակագծի հեղինակը միտքն ավարտում է պատկերավոր խոսքով. «Քաղաքը մի միասնական օրգանիզմ է, մենք գցել ենք նրա հենքը, որի վրա պիտի հյուսվի Ստեփանավանի յուրահատուկ սուբյեկտիվ կերպարը»։

Իսկ կերպարն արարող արվեստանոցի ղեկավար Ռուբեն Հասրաթյանը ասում է. «Ստեփանավան քաղաքի համար հիմնականում ընտրել ենք Ձորագետի ձախափնյա տարածքը՝ 380 հեկտար, որտեղ 2010 թվականին պիտի ապրի 28 հազար մարդ։ Ընտրության ժամանակ առաջին պայմանը համարել ենք այն, որ տարածքը ունենա բազալտի հաստ շերտ, լինի սեյսմակայուն, գյուղատնտեսության համար ոչ պիտանի։ Առաջ էլ ձախափնյակի նախագիծ կար, սակայն քիչ հողամաս էր հատկացված, բնակչությունն էլ՝ ինը հազար մարդ։ Իսկ Ձորագետի կիրճի վրա կառուցվող կամուրջը նախատեսված էր Երևան—Թբիլիսի տրանզիտային երթևեկության համար։ Դա սխալ էր. չէր կարելի կուրորտային քաղաքով տրանզիտային երթևեկություն անցկացնել։ Այժմ նախագծում ենք այնպես, որպեսզի այդ կամուրջը ծառայի միայն քաղաքին։ Նախատեսվում է գցել հատուկ տրանզիտային ճանապարհ, որը կանցնի Կիրովո գյուղի մոտ Ձորագետի կիրճի վրա կառուցվելիք նոր կամուրջով։ Այդ ճանապարհը հյուսիսարևելյան կողմից կշրջանցի քաղաքը։ Իսկ մինչև նորի կառուցումը արդեն գործող կամրջի ծայրից կանցնի ընդգետնյա ուղի, որպեսզի չխանգարվի քաղաքի անդորրը։ Քաղաքը կունենա երկու հանգստի գոտի, մեկը կիկլոպյան ամրոցի շրջակայքում, մյուսը՝ Լոռի Բերդի պատմահնագիտական տարածքում։

Արվեստանոցի ղեկավարը պահ մի դադար է առնում, սեղանին փռում Ձախափնյակում կառուցվելիք առաջին միկրոշրջանի նախագիծ-հատակագիծը և շարունակում բացատրությունը. «Հին ու նոր քաղաքները ըստ նախագծի կմիանան երկու հետիոտն կամուրջներով, որոնց կառուցվածքները կօգտագործվեն խմելու ջրատարները հին քաղաքից նորը անցկացնելու համար, առանց ձորում ինժեներական բարդ կառույցների։ Հին քաղաքում նույն 2010 թվականին բնակվելու է 12 հազար մարդ։ Ձախափնյակի առաջին միկրոշրջանում կլինեն 55 հազար քառակուսի մետր ընդհանուր մակերեսով տներ՝ 3,200 մարդու համար։ Դրանք երկհարկանի 4—5 սենյականոց և եռահարկ, քառահարկ մեկ, երկու, երեք սենյականոց շենքեր են, որոնց նախագծերը կազմել ենք մեր արվեստանոցում։ Թաղամասում կբացառվի կառուցման հին արատավոր եղանակը, կլինի բացարձակ բարեկարգում։ Այս 3.200 մարդու համար նախատեսել ենք յոթ բացօթյա մարզահրապարակ, ֆիզկուլտուրայի հրապարակներ, հեծանվային արահետներ, ծածկած մարզարան, 300 ստորգետնյա ավտոտնակ, զանազան ծառայության խանութներ, կենցաղսպասարկման տաղավարներ, խաղասենյակներ, զանազան միջոցառումների բացօթյա հավաքատեղի, 14-ական տեղանոց երկու մանկապարտեզ, 840 տեղանոց դպրոց, պոլիկլինիկա, դեղատուն, կոոպերացիոն շարժման համար ազատ տարածություններ։ Ա՛յ, տեսեք,— ճարտարապետը ցույց է տալիս տների խումբը, — շենքերի բակը մեքենա չի մտնում, մուտքերն անցողիկ են. ծնողը վախ չի զգա երեխայի համար։ Ամեն մի բակում կլինի երեխաների խաղահրապարակ, իսկ շենքերից դուրս, առանց մեքենաների մուտքի՝ մեծահասակների խաղերի տեղեր, խորովածանոց, ինչպես նաև հայ ժողովրդի ավանդական ժամանցի հրապարակներ։ Արվեստանոցում սկսել ենք նաև երկրաշարժից տուժած երեխաների համար վերականգնողական կենտրոնի նախագծի կազմումը։ Ուզում եմ միտքս ավարտել նրանով, որ ԱՄՆ-ի մի քանի խոշոր ճարտարապետներ, հայազգի Ռոնալդ Ալթունի գլխավորությամբ, ցանկություն են հայտնել ծանոթանալու Ստեփանավանի գլխավոր հատակագծին և որոշելու իրենց աջակցության ձևերը»։

Նայում ես առաջին թաղամասի հատակագիծը, լսում նրա հեղինակին ու քեզ ակամա պաշարում է անմեկնելի մի հաճելի զգացում քաղաքի գեղեցիկ ապագայի հանդեպ։ Ինքը՝ նախագիծը, ակնահաճո է, իսկ ինչպիսի՜ն կլինի իսկականը։ Պատկերացնում ես՝ Ստեփան Շահումյանի հուշահամալիրի դեմ-դիմաց, Ձորագետը գոտևորող կամրջի հակառակ կողմում, ձգվում է ապագա թաղամասը՝ այսօր նախագծում, վաղը իրողություն դարձած։ Դա, ինչպես ասում է քաղաքի գլխավոր հատակագծի և կառուցապատման ու ծավալային լուծումների հեղինակներին ակտիվորեն օգնող, ճարտարա-

րով քաղաքի մուտքին մեծ, ձախակողմում, ծնունդ է առել փայտե երկհարկանի 25 տներից բաղկացած մի գողտրիկ թաղամաս, որ պաշտոնապես կոչվում է «Դ», իսկ տեղացիների կամոք՝ Աշտաբերդ: Այստեղ բնակարանամուտի հանելի զգացումն է ապրել 400-ից ավելի ընտանիք: Երբ քաղաքում լիովին իրագործվի բնակարանաշինության ծրագիրը, աշտաբերդցիները կտեղավորվեն առավել հարմարավետ բնակարաններում, իսկ փայտե երկհարկանիները կընդգրկվեն հանգստյան գոտու ոլորտը...

Ուրեմն, այսպես, այսօր Ստեփանավանում ամենալուրջ պրոբլեմը թերևս բնակարանային շինարարությունն է: Չէ՞ որ տակավին մի քանի հազար ընտանիք, այդ թվում և Ադրբեջանից բռնագաղթվածներ, ապրում են ժամանակավոր, ոչ այնքան էլ նախանձելի կացարաններում: Այստեղից էլ՝ բնակարանային ապահովվածության անհրաժեշտությունը: Եվ լավ է, որ ստեփանավանցի հարյուրավոր աշխատավորներ ներգրավվել են տեղի ու եկած շինարարական կազմակերպություններում և ակտիվորեն մասնակցում են սեփական տան կառուցման պատվաբեր գործին: Թվերն իրենց այդ իրողության պերճախոս վկայությունն են. եթե մինչև երկրաշարժը քաղաքի շինարարության մեջ զբաղված էր 700 տեղացի, ապա այսօր՝ 1700-ից ավելի...

Ծավալվում է նաև անհատական բնակարանաշինությունը: Քաղխորհրդի գործկոմը, գլխավոր հատակագծին համապատասխան, Ջախափնյակի հյուսիս-արևելյան եզրին 40 հեկտար հողատարածություն է հատկացրել այդ նպատակի համար: Եվ 500 ընտանիք ձեռնամուխ է եղել անհատական մենատների կառուցմանը: Արդեն ուրվագծվում են ապագա փողոցները՝ եռիզված նոր-նոր հառնող ու արդեն տեսքի եկած նորատիպ առանձնատներով:

Մյուս ոչ պակաս կարևոր պրոբլեմը արդյունաբերական պոտենցիալի վերականգնումն է: Չէ՞ որ տարերային աղետի հետևանքով ձեռնարկությունների մի մասը փլվել էր, մյուսը՝ լրջորեն վնասվել, ու քաղաքը կորցրել էր ավելի քան վեց հազար բանվորական տեղ: Եվ բանվորությունն ու ինժեներատեխնիկական անձնակազմը պատվախնդրության խորին զգացումով վերաբերվեցին հարազատ ձեռնարկությունների ճակատագրին. փրկեցին շատ արժեքավոր մեքենասարքավորումներ, վերսկսեցին արտադրությունը և երկրում իրենց տեսակի մեջ միակը համարվող մի շարք արտադրատեսակների առաքումը պատվիրատուներին: Բավական է ասել, որ 1989-ի ապրիլին, երկրաշարժից չորս ամիս անց, արդեն աշխատանքով ապահովվել էր 2300 մարդ, իսկ տարվա ընթացքում, պլանով նախատեսված 22,8 մլն-ի փոխարեն, թողարկվեց 25 մլն 800 հազար ռուբլու արտադրանք: Ընթացիկ տարվա առաջին եռամսյակում էլ արտադրանքի ծավալը կազմեց 6 միլիոն ռուբլի կամ 48 տոկոսով ավելի, քան 1989-ի նույն ժամանակամիջոցում: Ընդ որում, արտադրությունը պարզապես կազմակերպվում էր հարմարեցված ու ժամանակավոր կառուցված արտադրամասերում...

Այս օրերին առանձնակի եռանդով շարունակվում են արդյունաբերական ձեռնարկությունների ամրացման ու նոր մասնաշենքերի շինարարության աշխատանքները: Միտումը նախկինն է՝ առողջարանային քաղաքում ունենալ մթնոլորտ արտանետվող թունավոր նյութերից զերծ, շրջակա միջավայրի համար անվտանգ, սակավ նյութատար ու էներգատար արտադրություններ: Սոսկ հզորություններն են մեծանալու նախաերկրաշարժային ժամանակաշրջանի համեմատությամբ: Ահա կոնկրետ վկայություններ. «Արդկապ» գործարանի արտադրանքի ծավալը, ութ միլիոնի փոխարեն, կազմելու է տասը միլիոն ռուբլի:

Կուսշրջկոմն ու քաղխորհրդի գործկոմը հոգ են տանում կանանց համար լրացուցիչ աշխատատեղեր ստեղծելու մասին: Հանրապետության թեթևարդմինը անսաց այդ առթիվ նրանց խնդրանքին՝ ընդլայնել գործվածքային ֆաբրիկան և լրացուցիչ կերպով 450 կին ընդգրկել արտադրության ոլորտը: Այստեղ էլ նախկին 1,3 միլիոնի փոխարեն, հին արտադրամասերը վերականգնելուց և նորերը կառուցելուց հետո, կթողարկվի ավելի քան վեց միլիոն ռուբլու արտադրանք: Ջախափնյակում տեղադրվում ու մոնտաժվում են այդ ֆաբրիկայի ու «Արդկապ» գործարանի, Աջափնյակում՝ կահույքի ֆաբրիկայի, բարձր հաճախականության էլեկտրասարքավորումների (ԲՀԷՍ) գործարանի և կարի արտադրամիավորման մոդուլները: Կբոլորի տարին, ու մոդուլային արտադրամասերի կամարների ներքո կթևածի աշխատանքի երգը... Եվ ստեփանավանյան մակնիշի տասնյակ արտադրատեսակներ կրկնեն Միության հարյուրավոր քաղաքների ու արտասահմանյան մի շարք երկրների ճամփան...

Իսկական պատվախնդրություն են դրսևորում ստեփանավանցի արդյունաբերողները: ԲՀԷՍ գործարանի մարդիկ իրենք ձեռնարկեցին կիսաքանդ պատերի ամրացումը և հաշված ժամանակում սկսեցին թողարկել երկրի ժողտնտեսության համար հույժ կարևոր նախաերկրաշարժյան բոլոր այն արտադրատեսակները, ինչպիսիք են պլազմային եղանակով կտրող ու ծակող սարքերը, տրանսֆորմատորները, որոնց միակ արտադրողի պատիվը վերապահված է այս ձեռնարկությանը: Ինձ բախտ է վիճակվել երկրաշարժից հետո ներկա լինել նրա ղեկավարների ու մասնագետների խորհրդակցություններից մեկին: Տեսնել էր պետք, թե ինչպիսի մտահոգություն էին արտահայտում գործարանի այսօրվա ու վաղվա մասին նրա տնօրեն Սամվել Գրիգորյանն ու գլխավոր ինժեներ Ժիրայր Հովհաննիսյանը, տեխնիկական բաժնի վարիչ Սիդա Պողոսյանն ու կոմպլեկտավորման բաժնի պետ Աշոտ Մանուկյանը, արտադրամասերի վարիչներն ու առաջատար մասնագետները: Եթե հարկ է, ասում էին նրանք, ինժեներներն էլ պիտի հաստոց գործի դնեն ու հոսքային գիծ, անհրաժեշտ է վերսկսել անխտիր բոլոր արտադրատեսակների թողարկումը, շարունակել աշխատել տնտեսավարման նոր եղանակներով (տնտհաշվարկ, ինքնաֆինանսավորում ու ինքնածախսածածկում): Կարճ ասած՝ նրանց խոսքը այժմ գործից չի տարբերվում... Հիմա էլ նրանք օգնում են Խարկովի № 5 նորոգման շինտրեստին՝ «Կիսլովոդսկ» տիպի մոդուլների մոնտաժման գործում...

## ԵՎ ՍՓՅՈՒՌՔԸ ՁԵՌՔ ՄԵԿՆԵՑ

Ահավոր երկրաշարժի բոթը հասավ աշխարհի տարբեր ծագեր ու շարժեց բարի կամքի տեր մարդկանց գութը: Ով ինչով ու ինչպես կարող էր օգնության ձեռք պարզեց աղետի գոտուն: Օգնությունից անմասն չմնաց նաև Ստեփանավանը:

Առաջին իսկ օրերից մինչև այժմ այստեղ հանգրվանել է ԳՖՀ-ի կարմիր խաչի մի ջոկատ: Եվ գերմանացի կարմիրխաչայինները իսկույն գործի են անցել, նրանք տեղադրել են իրենց իսկ բերած հիվանդանոցային տնակները՝ անհրաժեշտ սարքավորումներով: Այդտեղ էլ ապաքինվեցին շատ ստեփանավանցիներ: Այս տարի Կարմիր խաչի միջոցներով ու տեղի շինարարների ուժերով կառուցվելու են հիվանդանոց ու մանկապարտեզ: Այսօր արդեն Կոմերիտմիության փողոցը եռիզել է փայտե տների մի թաղամաս, որը նույնպես ծնունդ է առել ԳՖՀ-ի կարմիր խաչի միջոցներով ու արդեն այդ իսկ երկրի շինարարների ուժերով: Ստեփանավանի ներկա ու գալիք սերունդը երախտագիտությամբ է հիշելու բարեկամական օգնությունը, հատկապես այդ տների նախագծող ինժեներ-ճարտարապետի՝ Պետեր Բորոշի անունը: Նա էլ տերերից մեկն է շինարարական այն ֆիրմայի, որը տեղադրել է տները:

Եվ Ավստրիայից են օգնության հասել. «Խարտել-Հաուս» ֆիրման առաքել է շինարարական անհրաժեշտ կառուցվածքներ, որոնցով դպրոց է հավաքվել Լոռի Բերդ, մանկապարտեզ՝ Լեջան գյուղում:

Տակավին անցած տարի Նավթգազարդշինմինի կոլեկտիվների կազմում Ստեփանավան քաղաքի վերածնման գործին ակտիվորեն մասնակցում էր Բուլղարիայից ժամանած 45 մարդուց բաղկացած շինարարական բրիգադը՝ Մարգարիտ Տոդորովի գլխավորությամբ: Հյուսներ Բորիսլավ Մարկովի, Պյոտր Պետրովի, քարհատ Մոմչիլ Թոփչիևի, ամրանագործ Ցենելին Ստոյանովի և մյուսների ավանդը կա դպրոցի ու բնակելի շենքերի արարման գործում...

ԽՍՀՄ նավթգազարդշինմինի և Ռումինիայի արդշինմինի փոխադարձ համաձայնությամբ Ռումինիայի ԱՐԿՈՄ շինարարական ֆիրման ձեռնարկել է Ստեփանավանում 74 հազար քմ մակերեսով բնակելի տներ կառուցելուն: Դրանք լինելու են սեյսմիկ գոտում գտնվող Ֆորշան քաղաքի տների տիպի՝ հավաքովի երկաթբետոնե կառուցվածքներով, ինը բալի դիմացկունությամբ: Այդ ֆիրմայի ներկայացուցիչները նախապես եղել են Ստեփանավանում, ընտրել իրենց 1200 շինարարների համար կոտեջային տիպի տնակներ տեղադրելու և շինարարական բազան կառուցելու տարածքները: Իր հերթին Ստեփանավանի քաղխորհրդի գործկոմի նախագահ Ա. Բաբաջանյանը խորհրդային պատվիրակության կազմում եղել է Ռումինիայում: Պայմանավորվածություն է ձեռք բերվել, որ Բուխարեստի տնաշինական կոմբինատը շտկում մտցնի այդ տների նախագծում՝ ելնելով Ստեփանավանի բնակչության ընտանիքային կազմից և կենցաղային սովորույթից (հիմնականում երեք սենյականոց բնակարաններ, տեխնիկականի փոխարեն նկուղային հարկ, արտաքին տեսքը՝ հայկական ոճի):

Ստեփանավանցիների ցավին դարման են անում նաև սփյուռքահայ համայնքները: Այդ գործում անուրանալի ներդրում է արել ամենայն հայոց կաթողիկոս և ծայրագույն պատրիարք Վազգեն Առաջինը: Երկրաշարժից օրեր անց, Մեծի Տանն Կիլիկիո Գարեգին Երկրորդ կաթողիկոսի և այլոց հետ նա աճապարեց Ստեփանավան, սրտի ցավ զգաց տարերային աղետի ծանր հետևանքների համար և պատրաստակամություն հայտնեց օգտակար լինել քաղաքի վերածննդին: Կաթողիկոսի կոչով սփյուռքահայերը դրսևորեցին աննախադեպ ակտիվություն, առանձնապես՝ ամերիկյան և իտալական համայնքները: Այդ առթիվ ահա թե ինչ է ասում Ստեփանավանի քաղխորհրդի գործկոմի նախագահը. «Ամերիկայի Արևելյան թեմի առաջնորդ Թորգոմ արքեպիսկոպոս Մանուկյանը ցանկություն հայտնեց մեր քաղաքում կառուցել մեկ թաղամաս մոտ երեք հազար բնակչի համար: Նա երեք անգամ եղել է Ստեփանավանում, համատեղ ընտրել ենք տարածքը: Այդ թեմի առաջնորդարանի հրավերով Հայաստանի պատվիրակության կազմում ես ևս այցելեցի ԱՄՆ: Հանդիպում կայացավ թաղամասի շինարարությունն իրականացնող ընկերության պրեզիդենտ Գևորգ Հունանյանի հետ, ճշտեցինք կառուցման վերջնական ծրագիրը՝ երկհարկանի 40 բնակելի տուն, հանրակրթական ու արվեստի դպրոցներ, մանկապարտեզ, սպորտային կառույցներ, ամֆիթեատրոն, խանութներ, բնակչության սպա-

Եվ, վերջապես Ադրբեջանի ժողովրդական տնտեսության կատարելագործման կոմիտեի երկարատև շրջափակումները: Շինարարական կազմակերպությունները ժամանակին չեն ստանում շինանյութերն ու տեխնոլոգիական սարքավորումները, արդյունաբերական ձեռնարկությունները՝ հումքն ու նյութերը: Վերջիններս չեն կարողանում պատրաստի արտադրանքը ժամանակին առաքել պատվիրատուներին: Մատակարարումների խափանումների պատճառով անարդյունավետ է գործում Ստեփանավանում Նավթգազարդշինմիքի ստեղծած մոնոլիտային տնաշինության տարեկան 100 հազար խմ սպրանքային բետոնաշաղախի հզորության պոլիգոնը և 300 մեքենա հզորությամբ ավտոբազան: Եվ, ահա հետևանքը՝ անցած տարի թեև Նավթգազարդշինմիքի ստորաբաժանումները կապիտալ ներդրումների պլանը կատարեցին 103,6 տոկոսով, սակայն բնակելի տարածության գործարկմամբ 20 տոկոսի պարտք մնացին ու ջանում են այս տարի մարել այն...

Պակաս հոգս չէ քաղաքի անօթևան բնակիչների հաճախակի «արշավը» դեպի կուսշրջկոմ ու քաղխորհրդի գործկոմ: Պարզապես այս մարմինների ղեկավարներին համբերատարություն ու համառություն, եռանդ ու ջանքեր են պետք՝ մարդկանց կարիքները հոգալու, կենսահույզ խնդիրները լուծելու, պահանջները բավարարելու համար: Իսկ դրանք բազում են ու բազմաբնույթ...

ՎԵՐՋԱԲԱՆԻ ՓՈԽԱՐԵՆ

Թեև ոչ պատշաճ արագությամբ, թեև դժվարություններով ու հազար ու մի խոչընդոտներ հաղթահարելու ճանապարհով, օր-օրի վերականգնվում, հառնում է Ստեփանավանը: Ու ես մտովի պատկերացնում եմ նրա վաղը: Հին քաղաքը ապաքինվել, ձերբազատվել է վերքերից, նոր քաղաքը ծավալվել է Ձորագետի կիրճի ձախափնյա հարթությունում՝ մի կողմով հենված Տաշիր գետի կիրճին, մյուսով՝ Լոռի բերդաքաղաքի ավերակներին: Եվ Նոր ու Հին քաղաքները, որ Ձորագետի ամեհի կիրճը գոտևորող կամուրջների շնորհիվ մի միասնական ամբողջություն են կազմել, այցելուին ներկայանում են ավելի գեղեցիկ ու հրապուրիչ, ավելի առինքնող ու ակնահաճո՝ ճարտարապետական հիանալի լուծմամբ, բազում ու բազմաբնույթ կառույցներով...

Այո՛, հավատում եմ, որ մեծ արհավիրքից խոցված, ծանր վիրավոր քաղաքը նորեն կհառնի, կշարունակի գոյատևել ու մնալ որպես Լոռվա գեղատեսիլ բնության ոչ թե վերուստ տրված, այլ մարդու հրաշագործ ձեռքով կերտված իսկական զարդը, որպես մեր երկրի տարբեր ազգությունների մարդկանց, սփյուռքահայության ու արտասահմանյան մի շարք երկրների անդուլ շինարարների սերտ բարեկամության առհավատչյա...

Բարի երթ նրա զալիքին...



# ՄԿՐՏԻՉ ԽՐԻՄՅԱՆ

## (ԾՆՆԴՅԱՆ 170-ԱՄՅԱԿԻ ԱՌԹԻՎ)

**Է. ԿՈՍՏԱՆԴՅԱՆ**

XIX ԴԱՐՈՒՄ ԱՐԵՎՄՏՅԱՆ ՀԱՅԱՍՏԱՆԸ գտնվում էր թուրքական լայնածավալ կայսրության կազմում: Երկարատև ավերիչ պատերազմները, քոչվոր ցեղերի արշավանքները հետզհետե ամայացրել էին երկիրը, անընդհատ նվազեցրել բնիկ ժողովրդի՝ հայերի թվաքանակը: Չնայած անբարենպաստ պայմաններին, այդ հարյուրամյակում հայերը դեռևս կազմում էին հարաբերական և բացարձակ մեծամասնություն իրենց պատմական հայրենիքում: Բռնի իսլամացումը, մեծաքանակ ուղղակի և անուղղակի հարկերը անասելի ծանր պայմաններ էին ստեղծել հայ ժողովրդի բոլոր խավերի համար: Անհետացած հայ ֆեոդալական տներին փոխարինելու էին եկել քոչվոր քրդական ցեղապետերը՝ աշիրեթապետերը կամ բռնունները, որոնց փոխադարձ շահատակությունները չարիք էին դարձել: Կենտրոնական իշխանությունները ստիճանաբար իրենց էին ենթարկում քուրդ ռազմական ավազակուն, ձգտում չեզոքացնել նրանց կենտրոնախույս ձգտումները և դարձնել մի գործիք հայերին ոչնչացնելու համար:

Թուրքիան իսլամի դոգմաներով ղեկավարվող մի պետություն էր, որի կազմում գտնվող քրիստոնյա ազգերը՝ հայերը, մակեդոնացիները, բուլղարները, սերբերը, խորվաթներն ու չերնոգորցիները XIX դարի ընթացքում համառ ճիգեր էին գործադրում այդ ծանր ու անտանելի լուծը թոթափելու համար: Միջազգային դիվանագիտության մեջ հասունանում էր Արևելյան ճգնաժամը՝ Թուրքիայի ժառանգությանը տիրանալու համար: Միևնույն ժամանակ ուժերի հարաբերակցությունը չխախտելու նպատակով եվրոպական մեծ տերությունները վարում էին «Ստատուս քվոյի»՝ օսմանյան կայսրության տերիտորիալ ամբողջականությունը պահպանելու քաղաքականություն, որով խոչընդոտում էին ոչ միայն Ռուսաստանի առաջխաղացումը Մերձավոր արևելքում, այլև թուրքական բռնապետությունից տառապող ժողովուրդների ազգային-ազատագրական շարժումները:

Արևելյան ճգնաժամի բաղկացուցիչ մասն էր հայկական հարցը՝ արևմտահայ ժողովրդի ազատագրվելու, հայկական պետականության վերականգնման հարցը: Երկարատև և համառ այդ պայքարի ընթացքում Արևմտյան Հայաստանում ձևավորվեցին բազմաթիվ ընկերություններ, կազմակերպություններ, ապա նաև կուսակցություններ: Ասպարեզ եկան բազմաթիվ գործիչներ, որոնք ժողովրդի հարատևման ամենատարբեր ծրագրեր առաջադրեցին, մեծ խանդավառությամբ լծվեցին դրանց իրականացմանը: Այդ գործիչների թվում իր մնայուն տեղն ունի Մկրտիչ Խրիմյանը՝ XIX դարի երկրորդ կեսի ականավոր հասարակական-քաղաքական գործիչներից մեկը՝ ուսուցիչ, խմբագիր, վարդապետ, վանահայր, ապա եպիսկոպոս, Կ. Պոլսի հայոց պատրիարք, հոգևոր առաջնորդ և, վերջապես, Կաթողիկոս ամենայն հայոց, նաև՝ բանաստեղծ, հրապարակախոս, փիլիսոփա:

Վանի Այգեստան թաղամասում 1820 թ. ապրիլի 4-ին Կրիմցոց կամ Խրիմցոց տանը ծնվեց մի տղա, որին տվին Մկրտիչ անունը: Նրա հայրը տարազագործ էր, զբաղվում էր նաև վաճառականությամբ: Փոքրիկ Մկրտիչի դաստիարակությունը հանձն է առնում ջուլհակ, կտավագործ հորեղբայրը, որն ուներ փոքրիկ արհեստանոց, պահում էր մի քանի աշակերտ, նրանց սովորեցնում իր արհեստը: Աշակերտների թվում էր նաև պատանի Մկրտիչը: Հորեղբոր արհեստանոցը յուրատեսակ դպրոց եղավ նրա համար, որն այստեղ արհեստից բացի նաև գրել-կարդալ սովորեց: Այդ ժամանակ Վանում չկային քիչ թե շատ կանոնավոր դպրոցներ: Մկրտիչը մեկնում է Վանի մերձակայքի Կտուց, ապա Լիմ կղզիներում գտնվող վանական դպրոցներում ուսանելու: Կարճ ժամանակ մնաց նա այդտեղ: Պատանու բանաստեղծական խառ-

*ԿՈՍՏԱՆԴՅԱՆ ԷՄՄԱ ԱՇՈՏԻ— ՀՍՍՀ ԳԱ պատմության ինստիտուտի ավագ գիտաշխատող, պատմական գիտությունների թեկնածու:*

խաններին անհարիր էր տեղեկագրի կտրուկ, համարձակ լեզուն և ոճը: Երկար վիճաբանություններից և փոփոխություններից հետո 1872 թ. ապրիլի 11-ին տեղեկագիրը հանձնվում է մեծ եպարքոս Նեդիմ փաշային: Մի կողմից ընդդիմադիր խմբի հարձակումները, մյուս կողմից՝ Բ. Դռան խոչընդոտումները հուսահատեցնում են Խրիմյանին, և նա 1873 թ. օգոստոսին հրաժարվում է պատրիարքությունից: Սակայն նրա գործունեության ասպարեզը մնում է դարձյալ Կ. Պոլիսը:

Մի կարճ ժամանակ Խրիմյանը ոգևորվեց 1876 թ. միդհատյան սահմանադրությամբ, «Օսմանյան հայրենիքի» բարենորոգման պատրանքներով և ընտրվեց օսմանյան Սենատի անդամ: Սակայն Բ. Դուռը գավառներում հետզհետե սաստկացնում է ճնշահայկական քաղաքականությունը: Գավառահայությանը տնտեսապես քայքայելու նպատակով Բ. Դուռը պարբերաբար կազմակերպում էր հայաշատ վաճառաշահ քաղաքների շուկաների հրդեհում: Առաջին ազդանշանը տրվեց Վանում. այրվեց նրա հռչակավոր շուկան՝ հայ արհեստավորների և վաճառականների 100-ից անցնող խանութներով: Այդ ակտը սթափեցրեց Խրիմյանին, նա գրեց իր հռչակավոր «Վանգոյժը», որի հրատարակումից անմիջապես հետո կառավարությունն արգելեց նրա վաճառքը, իսկ Խրիմյանը հեռացվեց Սենատի անդամությունից:

1877—78 թթ. ռուս-թուրքական պատերազմի սկզբին Բագրևանդի և Ալաշկերտի հովտի հայության կոտորածի առթիվ Խրիմյանը գրեց իր «Հայգոյժը»: Այդ երկու գրքերը ցասման, ըմբոստացման և ընդվզման, մարդկային արժանապատվությունը բարձր պահելու կոչեր էին:

Եռանդուն գործունեություն ծավալեց Խրիմյանը Սան Ստեֆանոյի դաշնագրում հայ ժողովրդի շահերը ներկայացնելու գործում: Սարուխանի վկայությամբ, նրա անմիջական խորհրդով Ներսես Վարժապետյանը պատվիրակներ ուղարկեց Կ. Պոլսի ռուսական դեսպան Իգնատևի մոտ: Այդ պատճառով էլ Բեռլինի վեհաժողովին մասնակցելու համար ընտրված հայ պատվիրակությունը գլխավորում էր Մկրտիչ Խրիմյանը: Ժողովրդական մարդու պարզամտությամբ, հույսերով ու ակնկալիքներով մեկնեց Խրիմյանը Եվրոպա, այցելեց մեծ տերությունների արքունիքները, հայոց պատրիարքարանի կողմից տեղեկագրեր հանձնեց վեհաժողովի մասնակիցներին: Սակայն հայ պատվիրակությանը թույլ չտրվեց մասնակցել վեհաժողովի ոչ մի նիստին: Խրիմյանը Կ. Պոլիս վերադարձավ վեհաժողովի և դաշնագրի արդյունքներից պատրանաթափ: Կ. Պոլսի եկեղեցում կարդացած նրա նշանավոր քարոզը «թղթե և երկաթե շերեփի ու հարիսայի» մասին ցույց է տալիս, որ նա արդեն հույսը կապում էր ոչ թե արտաքին ուժերի՝ եվրոպական պետությունների միջամտության հետ, այլ նրա մեջ հասունանում էր զենքի և սեփական ուժի միջոցով ազատության հասնելու գաղափարը. «Սիրելի և օրհնյալ հայաստանցիներ, գավառացիներ, երբ հայրենիք վերադառնալու լինեք, ձեր բարեկամաց և ազգականաց իբրև պարգև մեկ-մեկ զենք տարեք, զենք առեք և դարձյալ զենք: Ժողովուրդ, ամենեն առաջ քո ազատության հույսը քո վրա դիր, քո խելքին և բազուկին ուժ տուր, մարդ ինքնիրեն պետք է աշխատի, որ փրկվի»: Այդ մտայնությամբ Խրիմյանը ընտրվում է Վասպուրականի հոգևոր առաջնորդ և 17 տարվա բացակայությունից հետո 1879 թ. վերադառնում Վան:

Ռուս-թուրքական պատերազմից հետո Վանը ծանր կացության մեջ էր: Սովը սպառնում էր ողջ գավառի բնակչությանը: Խրիմյանը Վանում կազմակերպեց Սովելոց հանձնաժողով. երկրագնդի բոլոր ծագերից հայությունը ձեռնամուխ եղավ Վասպուրականի ժողովրդի օգտին կատարվող հանգանակությանը: Այդ բանում քիչ դեր չխաղաց Խրիմյանի աննախադեպ ժողովրդականությունը: Հետագա տարիներին Վանն ապրեց մշակութային և հասարակական կյանքի զարթոնք: Կազմվեցին բազմաթիվ ընկերություններ, բացվեցին ուսումնարաններ և դպրոցներ: Խրիմյանի անմիջական նախաձեռնությամբ 1880-ին Վարագա վանքում բացվեց երկրագործական վարժարան: Վանի նորազարթ երիտասարդությունը սկսեց առաջադրել նաև քաղաքական պահանջներ: Վանում ստեղծվեց քաղաքական գաղտնի կազմակերպություն «Սև խաչ» անունով, որը կապեր հաստատեց Կարինի «Պաշտպան հայրենյաց» գաղտնի համանման կազմակերպության հետ: Նրա անդամներին ոգևորում և հովանավորում էր նահանգի հոգևոր առաջնորդը: Այդ բանի քաջ գիտակցությամբ, Բ. Դռան հրահանգով պատրիարքարանը հետ կանչեց անհանգիստ հոգևորականին Կ. Պոլիս: 1884 թ. Խրիմյանը դարձյալ մայրաքաղաքում էր, խիստ հսկողության ներքո:

Իրադրությունը Կ. Պոլսում հետզհետե սրվում էր: Գավառներից հետ էին կանչվում ազգանվեր գործիչները: Կ. Պոլսում կրոնական ժողովի ատենապետ Խրիմյանը իր ազդու ելույթներով Ազգային ժողովում հաճախ էր բարձրացնում գավառահայությանը հուզող հարցեր, բողոքում գավառներում կատարվող զանգվածային բռնարկությունների, արևմտահայության իրավիճակի օրեցօր վատթարացման դեմ: Այդ հանդգնության համար Բ. Դուռը Խրիմյանին աքսորեց Երուսաղեմ: 1890—92 թթ. նա Ս. Հակոբ եկեղեցու խուցերից մեկում էր՝ «Արծվին փակել էին ճնճղուկի վանդակի մեջ»:

1892-ի մայիսի 5-ին Մկրտիչ Խրիմյանին Էջմիածնում միաձայն ընտրեցին Ամենայն հայոց կաթողիկոս: Ցարի վավերացման բարձրագույն հրովարտակն ստացվեց 13 ամիս անց,



1893-ի հունիսի 3-ին, իսկ կաթողիկոսի օծման արարողությունը կատարվեց նույն թվականի սեպտեմբերի վերջին:

Հայ ժողովրդի համար տառապալից շրջան էին նրա կաթողիկոսության տարիները: 90-ական թվականներին փոխվել էր ցարական կառավարության վերաբերմունքը հայկական հարցի, հայ ժողովրդի և նրա ազատագրական շարժումների նկատմամբ: Ցարին ձեռնտու էր շահել սուլթանի համակրանքն ու բարեկամությունը, այդ պատճառով էլ անցել էր հարձակման՝ հայկական դպրոցները փակելու, հայ եկեղեցու արտոնությունները սահմանափակելու համար: 1895 թվականի փետրվարին, առանց ցարի համաձայնությունն ստանալու, Խրիմյանը ճանապարհվեց Պետերբուրգ, ցարին հանդիպելու և նրա պաշտպանությունը խնդրելու հայկական բարենորոգումների համար: Նոր Նախիջևանում նրան է հանձնվում ներքին գործերի մինիստրի գրությունը, որով հայտնվում էր, թե ցարը չի կարող ընդունել կաթողիկոսին... Չորս ամիս հետո միայն ցարը տեղի տվեց, ընդառաջելով ոչ թե Խրիմյանին կամ հայ մեծահարուստներին, այլ միջազգային իրադրության փոփոխությանը: Մայիսի 14-ին, երբ մեծ տերությունների դեսպանները հրատարակեցին հայկական բարենորոգումների ծրագիրը, ցարը բարեհաճեց համաձայնվել ընդունել Խրիմյանին: Մայիսի 15-ին վերջինս արդեն Պետերբուրգում էր, իսկ 31-ին ներկայացավ նրան և թագուհուն: Սովորական քաղաքավարական սիրալիրությունից և խոստումներից բացի զառամյալ կաթողիկոսին երկար ու տանջալի ճանապարհորդությունը ուրիշ արդյունք չտվեց:

Ալեզարդ կաթողիկոսի գործունեությունը առանձնապես աշխուժացավ 1903-ին, ցարիզմի՝ հայ եկեղեցական կալվածները հարքունիս բռնագրավելու մասին օրենքը գործադրելու ժամանակ: Անսալով ժողովրդի բողոքի ու զայրույթի ձայնին, Խրիմյանը բողոքագրեր է ուղարկում ցարին, հիշեցնում հայ եկեղեցու արտոնությունների մասին, սպառնում, որ օրենքը կատարելու դեպքում Ամենայն հայոց կաթողիկոսության նստավայրը կտեղափոխվի արտասահման: Միևնույն ժամանակ, նա, իբրև հայ եկեղեցու պետ, հրաման է արձակում բոլոր թեմական առաջնորդներին՝ թույլ չտալ ցարական չինովնիկներին ցուցակագրել եկեղեցիների ունեցվածքը: Երկու տարի տևեցին ժողովրդական հուզումները և կաթողիկոսի ու հոգևոր դասի համառ դիմադրությունը: 1905 թ. օգոստոսի 11-ին «ամենաողորմած ցարը» հրաման ստորագրեց 1903 թ. օրենքը վերացնելու մասին: Սեպտեմբերի 10-ին Խրիմյանը կոնդակ արձակեց՝ անցկացնել հոգաբարձուական ընտրություններ և նախապատրաստել դպրոցների բացումը:

Արևելահայ և արևմտահայ ժողովրդի ծանր կացությունը, ցարի և սուլթանի հակահայկական քաղաքականությունը խիստ հուսահատեցրին զառամյալ կաթողիկոսին: Խրիմյանն իր մահկանացուն կնքեց 1907 թ. հոկտեմբերի 29-ին, երբ դեռ իր ժողովրդի «անղեկ ու անապաստան նավը» չէր գտել մի խաղաղ հանգրվան:

Հարուստ գրական ժառանգություն է թողել Մկրտիչ Խրիմյանը: Դրանք գեղարվեստական, կրոնաբարոյախոսական, փիլիսոփայական երկեր են: «Հրավիրակ Արարատյան» (1850 թ.) և «Հրավիրակ Երկրին Ավետյաց» (1851 թ.), «Մարգարիտ արքայության երկնից» (1866 թ.) և «Հիսուսի վերջին շաբաթ և խաչի ճառ» (1876 թ.), «Ժամանակ և խորհուրդ յուր» (1876 թ.)՝ «Վանգոյժ» և «Հայգոյժ» (1877 թ.) «Դրախտի ընտանիք» (1876 թ.), «Սիրաք և Սամվել» (1878 թ.), «Պապիկ և Թոռնիկ» (1894 թ.) և բազմաթիվ գեղարվեստական գործերի մեջ իրենց արտացոլումն են գտել Խրիմյանի հայացքները հասարակական կյանքի տարբեր երևույթների նկատմամբ:

Խրիմյանը գտնում է, որ մարդը հասարակական երևույթ է: Մարդը կենդանիներից տարբերվում է նրանով, որ ապրում է հասարակական «ընկերական կյանքով»: Սակայն բոլոր բարիքներ ստեղծող գյուղացին «միշտ զրկված է», օրվա հացի կարոտ, որովհետև նրա աշխատանքը գողում են վաշխառուները: Սակայն իշխանությունը ոչ մի քայլ չի անում ժողովրդի տնտեսական վիճակը բարելավելու համար: Մարդկային հասարակության մեջ մի մասը դեռևս վայելում է ուրիշի քրտինքի արդյունքը. «Արդար է այն մարդ, որ միայն յուր քրտանց հացով կապրի, անիրավ է այն մարդը, որ առանց աշխատության ուրիշի քրտանց հացը կուտե լի զրկանքներով և ով կարող է չափել այն բազմադիմի զրկանքներ, որ կլինին արևուտակ աշխարհիս վերա և զրկյալներու դասը ամենամեծ մասն կկազմե»: Արդար վաստակով ապրող մարդիկ արհեստավորների և երկրագործների մեջ են, իսկ կալվածատերերը, ազնվականները անարդար «անգութ և խստաբարո անձինք են, որոնք իրենց վաստակավոր մշակները աշխատության մեջ զորհանապազ կմաշեցնեն»: Ծառանալով այն հայացքների դեմ, թե զորավորները պետք է «տկարներին տիրեն» և դա բնության ու մարդկային հասարակության աստվածային օրենքն է, Խրիմյանը հայտնում է իր կարծիքը. «Մի հավատար, ժողովուրդ, այդ վարդապետությունը տիրապետաց ոգին ստեղծեր է, մարդասեր և արդար Աստուծո չէ, զի ընդհանուր մարդկության կոչումն և կյանք՝ ազատություն, արդարություն և հավասարություն է»: Ըստ Խրիմյանի, իր ժամանակ դեռևս ոչ մի պետության սահմաններում գոյություն չունի արդար իշխանություն: Բացահայտելով իշխանության ստեղծման ակունքները.

ֆեսուրայի ինստիտուտի ունկնդիր, 1931 թ. հոկտեմբերից՝ Հայաստանի կոմկուսի Կենտկոմի բաժնի վարիչ, քարտուղար, Լենինականի քաղկոմի առաջին քարտուղար։ 1933 թ. հոկտեմբերից մինչև 1937 թ. հոկտեմբեր աշխատել է ԽՍՀՄ հաղորդակցության ճանապարհների ժողկոմատի համակարգում՝ Լուգանսկի երկաթուղային շրջանի (Լուգանսկ), Դոնեցկի երկաթուղու (Կրասնի Լիման), Հարավ-արևմտյան երկաթուղու (Կիև) քաղբաժնի պետ։ 1935 թ. պարգևատրվել է Լենինի շքանշանով։ Հայաստանի կոմունիստական կուսակցությունից եղել է ՀամԿ(բ)Կ XIII և XV համագումարների պատվիրակ։ Որպես լրացում № 9643 անձնական գործի կա ՀամԿ(բ)Կ Կենտկոմի ղեկավար կադրերի հաշվառման սեկտորի վարիչի օգնականի գրառումը. «Հարավ-արևմտյան երկաթուղու քաղբաժնի պետ։ Վտարված է կուսակցությունից, ինքնասպանություն է գործել»։ «Կազմացրել։ 1937 թ. նոյեմբերի 14»։ Նույն ստորագրությունը։

ՄՈՒՍԱՅԵԼՅԱՆ ԱՐՄԵՆ ՆԻԿՈԼԱՅԻ (1897—1938)։ Կուսակցության անդամ 1918 թ. փետրվարից։ Հյուսիս-կովկասյան երկրամասի Գեորգիևսկի շրջանի Սովետական ՄՏԿ-ի քաղբաժնի պետ, հարցաթերթիկ № 568։ 1927 թ. ավարտել է զինվորական ակադեմիան, 1932 թ. Կարմիր պրոֆեսուրայի ինստիտուտը «Համաշխարհային տնտեսություն» մասնագիտությամբ։ 1934 թ. ապրիլին պարգևատրվել է Լենինի շքանշանով։

ՕԳԱՆԵՍՈՎ ՆԻԿՈԼԱՅ ՍՏԵՓԱՆԻ (1894—1970)։ Ծնվել է Հայկական ԽՍՀ Մեղրու շրջանի Շվանիձոր գյուղում։ Կուսակցության անդամ 1913 թ. մայիսից։ Ընդունվել է ՌՍԴԲԿ Բաքվի կազմակերպության կողմից։ Պատվիրակ Ուզբեկստանի կոմկուսակցությունից։ Կոկանդի ՄՏԿ-ի քաղբաժնի պետ (1933 թ. հունվարից մինչև 1935 թ. հուլիս)։ Ուզբեկստանի կոմկուսի Կենտկոմի անդամ, հարցաթերթիկ № 440։

1913 թ. ավարտել է արհեստավորական դպրոցի երեք դասարան, կարմիր հրամանատարների Բաքվի հետևակային դպրոցը (1918 թ.), XI կարմիր բանակի հրամանատարական կազմի բարձրագույն դասընթացները (1919 թ.)։ Փետրվարյան հեղափոխությունից հետո՝ Արևմտյան ռազմաճակատի զինվորական կոմիտեի անդամ (Մինսկ), Հոկտեմբերյան հեղափոխության հաղթանակից հետո մինչև 1920 թ. ապրիլ ծառայել է կարմիր գվարդիայում և կարմիր բանակում։ Եղել է կուսակցության Բաքվի կոմիտեի մարտական դրուժինայի պետ, գումարտակի հրամանատար (Աստրախան), Ցարիցինի և Հյուսիս-կովկասյան ռազմաճակատներում՝ հատուկ հրաձգային գնդի հրամանատար, 11-րդ բանակի դիվիզիայի հրամանատար։ Պարգևատրվել է Մարտական կարմիր դրոշի շքանշանով։ 1920 թ. ապրիլից մինչև 1924 թ. մայիս՝ Բաքվի նահանգային կոմիսար։ 1924 թ. մայիսից մինչև 1933 թ. մարտը աշխատել և սովորել է Մոսկվայում։ Եղել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի հրահանգիչ, ԽՍՀՄ կենտվիճվարչության կոլեգիայի անդամ, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կուսկազմակերպիչ, ԽՍՀՄ արդյունաբերական ակադեմիայի շինարարական ֆակուլտետի ունկնդիր, Կույբիշևի անվան ռազմաինժեներական ակադեմիայի կոմիսար։ Եղել է Ուզբեկական ԽՍՀ Կոկանդի ՄՏԿ-ի քաղբաժնի պետ, որը ընդգրկում էր 157 բամբակացան կոլտնտեսություն։ ՄՏԿ-ների քաղբաժինները վերացվելուց հետո 1936 թ. հունիսից՝ ԽՍՀՄ հողժողկոմատի հիդրոտեխնիկական կառույցների նախագծման համամիութենական տրեստի դիրեկտոր։ Վեց ամիս շարունակ ղեկավարել է Հայաստանի հողային մարմինների վերստուգող բրիգադի աշխատանքները։ Մոսկվայի կազմակերպությունից ընտրվել է XIV համագումարի պատվիրակ, եղել է Ուզբեկստանի ԿԳԿ-ի անդամ։ Պարգևատրվել է Աշխատանքային կարմիր դրոշի շքանշանով։ 1937 թ. հունիսին ձերբակալվել է, վտարվել կուսակցությունից, արդարացվել է և վերականգնվել կուսակցության մեջ 1945 թ.։ 1954 թվականից անհատական կենսաթոշակառու։

ՍԱՂՈՅԱՆ ՊԵՏՐՈՍ ՀՈՎՍԵՓԻ (1902—1970)։ Ծնվել է Վրացական ԽՍՀ Ախալցխա քաղաքում։ Կուսակցության անդամ 1921 թվականից։ Ընդունվել է Վրաստանի կոմկուսի Ախալցխայի կազմակերպության կողմից։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կուսկազմակերպիչ «Արտեմ» հանքահորում (ք. Շախտի), հարցաթերթիկ № 483։ Պատվիրակ Ազով-Սևծովյան երկրամասային կազմակերպությունից։

Եղել է կոմերիտմիության Ախալցխայի գավկոմի քարտուղար (1922 թ.)։ Արևելքի աշխատավորների կոմունիստական համալսարանում ուսումն ավարտելուց հետո (1923 թ. օգոստոս—1926 թ. հունիս) աշխատել է Բրյանսկի նահանգկոմում՝ հրահանգիչ, ինքնակրթության նահանգբյուրոյի նախագահ, նահանգկոմի հանդեսի խմբագիր, 1928-ից մինչև 1936 թ. հոկտեմբեր եղել է Հյուսիսային Կովկասում՝ կուսաշխատանքում Արմավիրի, Տիմոշևի և Տիխորեցկի շրջաններում։ 1932 թվականից աշխատել է Շախտի քաղաքում՝ կուսակցության քաղկոմի բաժնի վարիչ, ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կուսկազմակերպիչ «Արտեմ» հանքում։ 1935-ից մինչև 1936 թ. հոկտեմբեր՝ ՀամԿ(բ)Կ Շախտիի քաղկոմի երկրորդ քարտուղար։ Հունիսին նրան հանձնվել է նոր նմուշի կուստոմս № 0986980։ 1936 թ. հոկտեմբերից եղել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմին կից կուսկազմակերպիչների բարձրագույն դպրոցի ունկնդիր։ 1937 թ. հունվարին ձերբակալվել է, վտարվել կուսակցությունից։ Մինչև 1944 թ. եղել է քաղբանտարկյալ Նորիլսկում։ 1944 թ. օգոստոսից աշխատել է Նորիլսկում



որպես մետալուրգշինի պետի օգնական, գիպսի գործարանի պետ, աղյուսաբլոկների գործարանի գլխավոր ինժեներ, շինարարական տեղամասի պետ։ 1954 թ. սեպտեմբերին ԽՍՀՄ Գերագույն դատարանի կողմից գործը կարճվել է, նա ազատ է արձակվել։ 1955 թ. հունվարից աշխատել է Ղազախական ԽՍՀ Պավլոդար քաղաքում։ ԽՄԿԿ Կենտկոմի ԿՎՀ-ի 1956 թ. նոյեմբերի 9-ի որոշմամբ վերականգնվել է կուսակցության մեջ։

ՍԱՐԿԻՍՈՎ (ԴԱՆԻԵԼՅԱՆ) ՍԱՐԳԻՍ ՀԱՐՈՒԹՅՈՒՆԻ (ԱՐՏԵՄԻ) (1898—1938)։ Կուսակցության անդամ 1917 թ. մարտից։ Կուսակցության շարքերն է ընդունվել ՌՍԴԲ(բ)Կ Շուշիի կազմակերպությունում։ Դոնեցկի մարզկոմի առաջին քարտուղար (1932 թ. սեպտեմբեր—1937 թ. մայիս), Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ, հարցաթերթիկ № 784։

Ծնվել է Շուշիում (ԼՂԻՄ), բանվորի ընտանիքում։ Ավարտել է Շուշիի հայկական ճեմարանի 7 դասարան, սովորել է Էջմիածնի Գևորգյան հոգևոր ճեմարանում։

Եղել է կուսակցության Շուշիի կոմիտեի քարտուղար, 1918 թ. վերջից աշխատել է Բաքվում, եղել է Բաքվի կոմիտեի նախագահության անդամ, «Իզվեստիա Բակսովետա» թերթի (հայերեն հրատարակության) խմբագիր, 1919 թ. դեկտեմբերից մինչև 1920 թ. մարտը՝ Բաքվի կոմիտեի նախագահ. մարտին ձերբակալվում է մուսավաթականների կողմից։ Խորհրդային իշխանության հաղթանակից հետո 1920 թ. մայիսից մինչև 1921 թ. հուլիս՝ Ադրբեջանի կոմկուսի Բաքվի կոմիտեի պատասխանատու քարտուղար։ 1921 թ. հոկտեմբերից մինչև 1925 թ. դեկտեմբեր աշխատել է Լենինգրադում՝ որպես երկրորդ քաղաքային և Մոսկվա-Նարվայի շրջկոմների պատասխանատու քարտուղար, ՌԿ(բ)Կ նահանգկոմի կազմբաժնի վարիչ։ ՀամԿ(բ)Կ ԿՎՀ-ի 1926 թ. հունվարի 18-ի որոշմամբ նրան հայտարարվել է խիստ նկատողություն «Լենինգրադյան կազմակերպության վերնախավում ստեղծված խմբավորմանը մասնակցելու համար, որը նպատակ ուներ մինչև XIV համագումարը խարխլել կուսակցության Կենտկոմի հեղինակությունը և պայքար կազմակերպել Կենտկոմի դեմ, իսկ XIV համագումարից հետո դըժվարացնել համագումարի ընդունած որոշումների կենսագործումը»։ Ազատվել է աշխատանքից, գործուղվել Կենտկոմի տրամադրության տակ։ 1926 թ. փետրվարից մինչև 1927 թ. ապրիլ ղեկավարել է ՀամԿ(բ)Կ Հյուսիսային Կովկասի երկրկոմի մամուլի բաժինը (Դոնի Ռոստով)։ 1927 թ. ապրիլից մինչև 1928 թ. մայիսը չի աշխատել։ 1927 թ. հոկտեմբերին Ադրբեջանի կոմկուսի Կենտկոմի բյուրոյի որոշմամբ վտարվել է կուսակցությունից՝ «լենինգրադյան և միացյալ տրոցկիստական-զինովևական օպոզիցիային մասնակցելու համար»։ 1928 թ. նոյեմբերին ՀամԿ(բ)Կ Կենտկոմի կողմից վերականգնվել է կուսակցության մեջ։ 1928 թ. մայիսից մինչև 1932 թ. սեպտեմբեր եղել է տնտեսական աշխատանքում՝ Վորոնեժի մարզսպառմիության նախագահի տեղակալ, մարզկոոպհացառի վարչության նախագահ, հացկենտրոնի կազմբյուրոյի նախագահ Մոսկվայում, ԽՍՀՄ ժողկոմխորհին կից Զագոտզեռնո համամիութենական միավորման պետ։ Եղել է կուսակցության Լենինգրադի քաղաքային և նահանգային կոմիտեների, ՀամԿ(բ)Կ Հյուսիսային Կովկասի երկրամասային կոմիտեի անդամ, ԽՍՀՄ և Ուկրաինական ԽՍՀ Կենտգործկոմների անդամ։ 1935 թ. դեկտեմբերի 20-ին պարգևատրվել է Լենինի շքանշանով։

Կուսակցության X համագումարի պատվիրակ է ընտրվել Ադրբեջանի կոմկուսակցությունից, XIII—XIV համագումարների պատվիրակ՝ Լենինգրադյան կազմակերպությունից, XVI համագումարի՝ ՀամԿ(բ)Կ Մոսկվայի կազմակերպությունից, XVII համագումարի պատվիրակ՝ Ուկրաինայի կոմկուսակցությունից։ XVII համագումարում ընտրվել է ՀամԿ(բ)Կ Կենտկոմի անդամության թեկնածու։ Հինգ տարի ղեկավարել է կուսակցության Դոնեցկի մարզային կազմակերպությունը, եղել է Ուկրաինայի Կ(բ)Կ Կենտկոմի քաղբյուրոյի անդամ։ ԽՄԿԿ անդամի վերջին գրանցման բլանկը կազմվել է 1936 թ. սեպտեմբերի 28-ին։ Նրան հանձնված է եղել նոր նմուշի կուստոմս № 000097։

1937 թ. հունիսի 7-ին ձերբակալվել է, Դոնեցկի մարզկոմի պլենումի 1937 թ. հունիսի 8-ի որոշմամբ վտարվել է կուսակցության մարզկոմի բյուրոյի, պլենումի անդամությունից և կուսակցությունից որպես «ժողովրդի թշնամի»։ ԽՍՀՄ գերագույն դատարանի զինվորական կոլեգիայի 1937 թ. սեպտեմբերի 1-ի դատավճռով ճանաչվել է մեղավոր այն բանում, որ «1921 թվականից բաժանել է տրոցկիստական հայացքներ, իր հետագա հակահեղափոխական գործունեության մեջ, մինչև ձերբակալումը եղել է հակահեղափոխական, տրոցկիստական-զինովևյան տեռորիստական կազմակերպության ակտիվ մասնակից և տեռորիստներ Զինովևի, Եվդոկիմովի առաջադրանքով կապ է հաստատել Պյատակովի հետ, որի ցուցումով ղեկավարել է լայնորեն ճյուղավորված տեռորիստական կազմակերպությունը, որը ուղղված էր Դոնբասի ածխարդյունաբերության և գյուղատնտեսության մեջ վնասարարություն կազմակերպելու նպատակին»։ Դատապարտվել է գնդակահարության։ Սեպտեմբերի 2-ին դատավճիռը ի կատար է ածվել։ ՀամԿ(բ)Կ Կենտկոմի 1937 թ. հոկտեմբերյան պլենումում վտարվել է Կենտկոմի կազմից (հետմահու)։

Քննության առնելով Սարկիսովի դատական գործի վերաբերյալ գլխավոր զինվորական դատախազի եզրակացությունը, ԽՍՀՄ գերագույն

թյանը», «ադրբեջանական ժողովրդին երբես առ երբես դրեցին որակյալ ազգային կադրերի դեֆիցիտի հանդեպ, և այդ դեֆիցիտը զգացվում է նաև մինչև այժմ, հատկապես հումանիտար բնագավառում»: Դրա հետևանքով «հումանիտարներից հազվագյուտ մարդիկ են հայտնի Բալաջարիից դուրս»: Պարզ է, որ հանրապետության պետական անվտանգության ապարատում կապիտան Ավանեսյանը, լեյտենանտ Գալըստյանը և սերժանտ Օգանեզովը չէին կարող վճռական դեր խաղալ: Կային անհամեմատ ավելի խոշոր աշխատակիցներ, քան «հզոր» սերժանտը՝ լայն հնարավորություններով ու իրավունքներով:

Բունիաթովի նպատակը ակնհայտ է՝ անիրազեկ զանգվածի զայրույթը ուղղել հակահայկական հունով: Եվ ընթերցողներին է հրամցվում մի հետևություն՝ ա՜խ, այդ չարագործ հայերը: Միջին դարերում ոչնչացրին ամբողջ «աղվանա-ադրբեջանական» մշակույթը (մինչ այդ աղվանների համար գիր ստեղծելով), յուրացրին այն, «հայացրին» աղվաններին, քրիստոնյա դարձրին նրանց, իսկ 1937 թվականին իրականացրին ադրբեջանական մշակույթի գործիչների բնաջնջում: Նման սադրանքներով է նոր սերնդին սովորեցնում Զիյա Բունիաթովը՝ Ադրբեջանական գիտությունների ակադեմիայի ակադեմիկոսը և Անկարայում թուրքական ակադեմիայի անդամը:

Նկատենք, որ 1936—1937 թթ. երկու անգամ գլխատվել էին Հայաստանի կուսակցական կազմակերպությունը, խորհրդային մարմինները, ձերբակալվել երկու գումարումների Կենտկոմի բյուրոյի ամբողջ կազմը, գնդակահարվել Հայաստանի Կ(բ)Կ Կենտկոմի յոթ առաջին քարտուղարներից վեցը, որոնք աշխատել են 1921—1937 թթ.: Աքսորից վերադարձավ Աշոտ Հովհաննիսյանը: Ռեպրեսիաների ենթարկվեցին կոմերիտմիության Կենտկոմի տասնմեկ առաջին քարտուղարներից տասը, ժողկոմխորհի նախագահներ, Հայաստանի ԿԳԿ-ի նախագահներ, ժողկոմներ: Երկու տարում ռեպրեսիաների ենթարկվեց մոտ վեց հազար մարդ: Իսկ Բաղիրովը «կայուն կերպով» կառավարում էր Ադրբեջանը, հաստատելով իր անձնական դիկտատը, վայելելով Ստալինի և Բերիայի համակրանքն ու վստահությունը, որոնց նա զոհաբերեց Անդրկովկասից սերած ոչ քիչ թվով ազնիվ կոմունիստների:

Չի կարելի չհամաձայնել հետևյալ մտքին. «Կագանովիչը մեղավոր է ոչ թե այն պատճառով, որ հրեա է, այլ այն պատճառով, որ ամեն ինչում եղել է Ստալինի գործակիցը: Այն բանում մեղավոր չէ Ստալինը, որ վրացի է, այլ մեղավոր է ստալինիզմի մեջ: Ռուս, վրացի, ուկրաինացի գյուղացին հողից օտարացվել է ոչ թե այն պատճառով, որ մի ժամանակ հողժողկոմ է եղել Յակովլև-Էպշտեյնը: Ուզբեկներն իրենց մոտ բամբակով բազմամիլիոնանոց արկածախնդրություն թույլ տվեցին ոչ թե այն պատճառով, որ իրենք ուզբեկ են: Մեր «հայրենասերները» որքան կցանկանային ամեն ինչ հասարակացնել և դարձյալ մեզ ուղղել կեղծ հետքերով: Ինչպես պետք է ուրախանան բյուրոկրատը, անբանն ու ամեն կարգի ապաշնորհները այդպիսի «հասարակացման» համար: Թե ինչով է վերջանում սոցիալական աղետների պատճառներն ու դրանց մեղավորներին ազգային «ոգու» մեջ որոնելու փորձը, մենք այսօր գիտենք Սումգայիթի (այժմ արդեն նաև Բաքվի, Կիրովաբադի, Նախիջևանի, Ֆերգանայի, Դուշամբեի— Հ. Ա.) դառը փորձով: Չափից դուրս վտանգավոր խաղեր» «Юность» 1988, № 7, էջ 85):

Առաջ քաշելով Ադրբեջանական ԽՍՀ (ըստ Բունիաթովի «մեր հանրապետությունում») անվտանգության մարմիններում «տեղավորված» հայազգի կապիտանի, լեյտենանտի, սերժանտի կողմից «ադրբեջանական մտավորականության ոչնչացման» թեզը, Բունիաթովը ակնհայտորեն փորձում է օգտվել հայ ժողովրդի դահիճներից մեկի, Օսմանյան կայսրությունում և Արևմտահայաստանում հայերի ցեղասպանության նախաձեռնողներից ու կենսագործողներից՝ Էնվեր փաշայի զինանոցից: «Մենք գտնում ենք, որ Ադրբեջանը պատկանում է ադրբեջանցիներին» — այսպես են հնչել նրա խոսքերը Բաքվում 1920 թ. սեպտեմբերի 4-ին՝ Արևելքի ժողովուրդների առաջին համագումարում: Եվ այսօր Ադրբեջանը «մաքրվում է» հայերից և ռուսալեզու բնակչությունից: Նոր ցեղասպանություն:

Ստալինյան ռեպրեսիաների զոհերի նկատմամբ պատմական և սոցիալական արդարության վերականգնումն այժմ դարձել է առաջնակարգ պետական գործ: Այն անկասկած նպաստում է հասարակական-քաղաքական, բարոյական մթնոլորտի առողջացմանը, հետագա անօրինականությունների կանխմանը:

---

«ԼԵՆԻՆՅԱՆ ՈՒՂԻՈՎ», № 6, 1990 թ.: Լույս է տեսնում հայերեն և ռուսերեն:

Հանձնվել է շարելու 16.05.1990 թ.: Ստորագրվել է տպագրելու 5.06.1990 թ.: ՎՖ 01458: Ֆորմատ $70 \times 108^1/_{16}$: Թուղթ՝ տպագրական № 2: Օֆսեթ տպագրություն: 8,4 պայմանական տպագրական մամուլ: 9,4 հաշվային-հրատարակչական մամուլ: Տպաքանակը՝ 8232: Պատվեր՝ 516: Գինը՝ 25 կոպ.:

ՀԿԿ Կենտկոմի հրատարակչության տպարան: 375023, Երևան, Օրջոնիկիձեի պողոտա № 2:
Типография издательства ЦК КП Армении. 375023, Ереван, проспект Орджоникидзе, 2.